# ԿԵՑՑԵ ՄԱՅԻՍԻ 1-Ը

## ԵՐԳ ՄԱՅԻՍՅԱՆ

ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ

Կանաչ մայիսն է
Անցնում փողոցով,
Ամենուր լույս է,
Դրոշների ծով...
Լույսի շքերթ է,
Խնդում ու կրակ,
Շիկնել են փողոց
Ու հրապարակ...
Ծաղկուն մայիս է,
Մայիս է կրկին,
Լենին պապիկն է
Ժպտում ամենքին,—
Ժպտում պիոներին,
Ձեռքը երկարում
Ու պատվանդանից
Շքերթն է վարում...

Նկ. ԽԱՉԱՏՈՒՐ ԳՅՈՒԼԱՄԻՐՅԱՆԻ



# ԿԱՐՄԻՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Մայթերի վրա՝
Արևով օծուն
Ամենակապույտ
Երկինքն է բացվում։
Եվ սավառնում են
Մով եթերի տակ
Աղավնիները
Ամենաճերմակ։
Ելնում են, ասես,
Հյուրին ընդառաջ
Եղևնիները
Ամենականաչ։
Նայում ես հեռուն,
Մի պահ կանգնելով՝
Ամենամաքուր
Երազանքներով։
Շուրջն ամենուրեք
Բազալտ ու մարմար,
Գորշ խոյակներին՝
Ոսկեծուփ կամար։
Ծաղկազարդ թփեր
Ու երկինք լազուր...
Ինչու՞ ենք հապա
Մենք կարմիր ասում
Այս հազարերանգ
Հրապարակին։
Կարմիր ենք ասում,
Քանի որ այստեղ
Շողում են բախտի
Հնգաթև աստղեր։
Եվ այստեղից են
Լույսեր արձակում
Գերբն ու դրոշը
Մեր բոսորագույն։





# ՄԱՀԱՑՈՒ ԳՈՏԵՄԱՐՏ

ՎԻԿՏՈՐ ԲԱԼԱՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Կրակոցը խախտեց գիշերային անդորրն, ու երկնքում երևաց լուսավորող հրթիռը, հետո՝ երկրորդը, երրորդը: Տագնապի ազդանշան էր. հարևան տեղամասում խախտել էին սահմանը: Երևի ինչ-որ կենդանի է անցել, մտածեցի ես, թե չէ թշնամին երբեք չէր համարձակվի այդ տեղանքով անցնել, որն ավելի մոտ էր ուղեկալին ու իր դիրքով ամենահուսալին էր: Հուսալի էր մեզ՝ սահմանապահներիս համար, իսկ թշնամու համար ամենավտանգավորն էր: Թշնամին էլ հիմար չէ, որ պատահական տեղով փորձի խախտել սահմանը: Նա այն ափից երկար ժամանակ, անշուշտ, ուսումնասիրում է ամեն մի թուփն ու քարը: Ես նայեցի ընկերոջս՝ Անատոլիին, որն անտարբեր թափ տըվեց ձեռքը: Շատ էր պատահել, երբ որևէ կենդանի այն ափից լողալով անցել էր գետն ու այդպես անհանգստացրել մեզ: Բայց, չանցած երկու րոպե, համոզվեցինք, որ սխալվել ենք: Անսպասելի սկսված հըրաձգությունը սթափեցրեց մեզ:

— Վահա՛ն,— ականջիս շշնջաց Անատոլին,— ի՞նչ անենք:

— Սպասենք:

— Գուցե տղաների տեղը նեղ է և օգնության կարիք են զգում:

— Զանգահարիր ուղեկա՛լ, տես ի՞նչ են ասում:

Մոտ տասը-տասնհինգ մետր մեզնից հեռու, մենավոր ծառի փչակում տեղավորված էր հեռախոսը: Անատոլին նետվեց դեպի ծառը: Զորբին ցցել էր ականջներն ու նայում էր կրակոցների կողմը: Նա ձիգ տվեց վզկապը, հոտոտեց օդը:

— Սատանա՞ն տանի, հեռախոսը փչացել է:— Անատոլին հևում էր, ավտոմատը ուսից տեղափոխել էր կրծքի վրա, ձեռքը դրել էր ձգանին: Կրակոցները չէին դադարում, գետի երկայնքով տարածվել էր տագնապի ազդանշանը:

— Գործը լուրջ է, պետք է գնալ,— ասաց Անատոլին և ուզեց առաջ նետվել:

— Սպասի՛ր, չի կարելի այդպես: Պահակակետը հո անտեր չե՞նք թողնելու: Կգնամ ես, իսկ դու կըմնաս այստեղ: Զորբին թող մնա քեզ հետ:— Շան վզկապի ծայրը ուժով խոթեցի նրա բռան մեջ: Զորբին թեքել էր գլուխը, շարունակում էր հոտոտել օդն ու ձիգ էր տալիս վզկապը:

Հինգ-վեց քայլ հազիվ էի արել, երբ լսեցի Անատոլիի ձայնը.

— Կանգնի՛ր, կանգնի՛ր, կկրակե՛մ:

Շրջվեցի. նա կանգնած էր թիկունքը դեպի ինձ: Նախազգուշական մի կրակահերթ բացեց, որին հաջորդեց շան հաչոցը:

— Փախավ շան որդին, ա՛յ այն կողմը:

Զորբին անհանգիստ հաչում էր, ձիգ տալիս վզկապը: Վազեցինք Անատոլիի ցույց տված ուղղությամբ: Հազիվ նշմարեցի մթին ձուլվող մարդու ստվերը: Անատոլիի ձեռքից վերցրի Զորբիի վզկապն ու ձայն տվի.

— Առա՛ջ:

Ստվերը չքացավ, անհետացավ խավարում:

— Գուցե բա՞ց թողնենք շանը, հը՞,— թիկունքից լսեցի Անատոլիի հևացող ձայնը:

— Հա՛մ շանը կկորցնենք, հա՛մ էլ նրան, չե՞ս տեսնում, ոչինչ չի երևում,— պատասխանեցի ես:

Սահման խախտողը կարող էր սպանել շանն ու կորչել մեր տեսադաշտից: Իսկ երբ դու շան հետ ես, գի-

շերն ինչքան էլ մութ լինի, նա կգնա ճիշտ հետքերով: Զորբին դանդաղեցրեց ընթացքը, հոտոտեց գետինը, փոխեց ուղղությունը, քիչ անց կանգ առավ, նորից հոտոտեց ու դարձյալ շեղվեց:

— Շան որդին շեղումներով է վազում,— ասաց Անատոլին,— դուրս կպրծնի, կկորչի...

Կրակոցները դադարել էին, գիշերը վաղուց էր կես եղել: Այդ ժամերին ավելի զով է լինում, բայց այնուամենայնիվ, ամռան տապը զգացնել էր տալիս: Ամբողջովին կորել էի քրտինքի մեջ: Ի՞նչ անել, կրակե՞լ: Հազիվ թե լսեին սահմանի վրա: Բավականին հեռացել էինք թե՛ սահմանից և թե՛ ուղեկալից:

— Ազդանշան չտա՞մ,— հարցրեց Անատոլին:

Հրթիռային ատրճանակը նրա մոտ էր: Իրար ետևից երեք հրթիռներ երկինք մխրճվեցին: Անօգուտ էր հրթիռի լույսի տակ սահմանը խախտողին փնտրելը. քանի գնում թփուտները խտանում էին: Այնտեղ, ուր վերջանում էին թփուտները, մի փոքրիկ անտառ կար, որի միջով գետակ էր հոսում:

«Միայն թե չհասնի գետակին, միայն թե չհասցնի մտնել անտառ»,— մտքումս կրկնում էի ես, չնայած գիտեի, որ մինչև անտառ դեռ շատ ճանապարհ կա անցնելու: Տեսնես, մերոնք նկատեցի՞ն, թե որտեղից են կրակում հրթիռները, արդյոք գիտե՞ն, որ մեր հեռախոսը չի աշխատում: Նոր միայն գլխի ընկա, թե քանն ինչումն է. սահմանը կա՛մ մի քանի տեղով են փորձել խախտել, կա՛մ, ավելի հավանական է, հարևան տեղամասում կեղծ խախտում են կազմակերպել, ուշադրություն գրավելու համար հրաձգություն սկսել ու սահմանը խախտել մեր տեղամասից: Հեռախոսը փչանալը չէր կարող պատահական լինել: Փորձված աղվես էր երևում մեր առջևից փախչողը:

Արևելքը դանդաղ շառագունում էր, կամաց-կամաց բացվում էր լույսը: Հեռվում պարզ գծագրվեցին անտառի ծառերը: Մեկ էլ նկատեցինք սահմանը խախտողին: Նա նման էր երկար տարածություն անցած ուժաթափ թեթև ատլետի, որը ֆինիշի մոտ կարծես երկրորդ շնչառությունն է ստանում և գերագույն ճիգով ավարտում վազքը: Նրա ֆինիշը անտառն էր, փրկությունը՝ գետակը: Երևում էր, լավ էին ծանոթացրել տեղանքին: Մեր միջև տարածությունը հետզհետե կրճատվում էր:

— Կանգնի՛ր, կկրակե՛մ,— բղավեց Անատոլին ու քիչ հետո օդում կրակահերթ բաց թողեց: Կրակահերթը կարծես մտրակեց հետապնդվողին. ավելի արագացրեց վազքը: Երբ զգացի, որ արդեն Զորբին ինձ քարշ է տալիս իր ետևից, բաց թողեցի նրան: Լըսեցի շան մռլտոցը, ու նրանք թավալվեցին թփուտների մեջ, կորան մեր տեսադաշտից: Մոտ տասնհինգ մետր էր մնում, որ հասնեի նրանց, թիկունքից լսում էի Անատոլիի հևոցը: Զորբին աղիողորմ կլանչեց: Նույն վայրկյանին սահմանը խախտողը ոտքի կանգնեց ու շարունակեց վազել:

— Կանգնի՛ր,— ձայն տվեցի ես: Շրջվեց ու թափով շարժեց ձեռքը: Կրծքավանդակիս մեջ սուր ծակոց զգացի, հետո կարծես կրակ տվին, այրեցին կուրծքս: Ավտոմատի կոթով փորձեցի հարվածել, սակայն նա խաբուսիկ շարժում արեց, ինչպես բռնցքամարտում, ու ես իմ թափից վայր ընկա: Պաշտպանվելու համար չկարողացա բարձրացնել աջ ձեռքս: Ասենք, դրա կարիքը չզգացվեց, որովհետև նույն պահին Անատոլիի հուժկու հարվածը թշնամուն տապալեց գետին:

Սարսափելի մի ծանրություն ճնշում էր կուրծքս ու ձեռքս: Անատոլին կողերիս արանքից հանեց դանակը, կապեց վերքս: Ցավերն ավելի սաստկացան, շուրթերս սկսեցին այրվել: Վիրակապի տակից հոսում էր արյունը, տաքացնում, ապա սառեցնում մարմինս: Անատոլին մոտեցավ Զորբիին, հետո արցունքի կաթիլներ փայլեցին նրա աչքերում... Հանկարծ պոկվեց տեղից ու սկսեց կատաղի աքացիներ հասցնել թշնամուն:

— Ի՞նչ ես անում,— տնքացի ես:

— Շանսատակ եմ ուզում անել այս շանորդուն,— մռնչում էր իմ ընկերը՝ շարքային Անատոլի Պոլեյշչուկն ու այդ հարվածներով կարծես ուզում էր վրեժ լուծել իր երկու ընկերոջ թափված արյան համար: Մեկը՝ Զորբին, արդեն անշնչացել էր, մյուսը՝ ես, շարքային Վահան Առաքելյանը, արնաքամ էր լինում իր աչքերի առաջ:

Արեգակն արդեն դուրս էր եկել, երբ մենք ճանապարհ ընկանք:

Ուղեկալից և մոտակա բնակավայրից գրեթե նույն հեռավորության վրա էինք, ուստի որոշեցինք շարժվել դեպի ուղեկալ՝ հույս ունենալով ճանապարհին հանդիպել մեր ընկերներին: Ես հազիվ էի քարշ տալիս ոտքերս, ձախ ձեռքս գցել էի Անատոլիի ուսին: Գերին քայլում էր առջևից՝ ձեռքերը ետևին կապած: 40-45 տարեկան ատլետիկ կազմվածքով մարդ էր: Անատոլին մի ձեռքով բռնել էր ինձ, մյուսով՝ ավտո-



մատը: Սառը քրտինքը պատել էր ճակատս, շուրթերս այրվում էին, աչքերս՝ մշուշվում:

— Թո՛ղ ինձ,— դիմեցի Անատոլիին,— այլևս չեմ կարող, առանց ինձ շուտ կհասնեք:

— Ի՞նչ ես ասում, Վահա՛ն, այս արևի տակ քեզ չեմ թողնի:

— Չեմ կարող:

Ոտքերս այլևս չէին ենթարկվում: Նա շալակեց ինձ: Մի քանի անգամ կորցրի գիտակցությունս: Ամբողջովին ջրի մեջ էի. քրտինքից Անատոլիի մարմինը կարծես ջուր էր դարձել: Հորդորում էր ինձ, սիրտ տալիս: Շնչում էր դժվարությամբ, հազիվ էր փոխում ոտքերը: Նա՝ ուկրաինացի Տոլյան, որն այնքան հարազատ էր ինձ, որին այնքան հարազատ էի ես:

— Լսի՛ր, հիմա՛ր,— ռուսերեն արտասանած օտար ձայնից բացեցի աչքերս: Մի՞թե մեռնենք հասան: Մենք դարձյալ երեքով էինք: Խոսողը գերին էր:

— Դրա երգն արդեն երգված է,— համոզում էր Անատոլիին,— գա՛ծ դիր, թող հանգիստ շունչը փչի: Ինձ մոտ շատ փող կա, բոլո՛րը վերցրու: Գնանք միասին, ինձ հետ չես կորչի:

Նա գլուխը թեքել էր մեր կողմը, խոսում էր մաքուր ռուսերեն:

— Եթե շարունակես խոսել, շանսատակ կանեմ:

Գերին կանգ առավ, շրջվեց.

— Հիմա՞ր:

Ծարճատեց Անատոլիի ավտոմատը: Անծանոթի ոտքերի առջև կարծես անտեսանելի գծ՝ անդիով հնձեցին խոտը: Նա վախեցած նստեց տեղում:

— Վե՛ր կաց,— հրամայեց Անատոլին,— իսկ հիմա շրջվի՛ր և քայլի՛ր: Սա զգուշացում էր, երկրորդ կրակահերթը ճակատիդ բաց կթողնեմ, եթե մի բառ արտասանես:

Բավական ժամանակ քայլում էինք լուռ: Հանկարծ անծանոթը սուր ճիչ արձակեց, վեր ցատկեց, ապա ոտքով սկսեց հարվածել գետնին: Նրա ոտքերի տակ գալարվում էր թունավոր օձը:

— Արձակե՛ք ձեռքերս, չեմ փախչի,— խնդրում էր նա:

— Նրան պետք է փրկել, մեռած նա մեզ պետք չէ,— շշնջացի ես:

Անատոլին ինձ ցած դրեց, մոտեցավ նրան:

— Արձակի՛ր ձեռքերս,— նորից խնդրեց նա:

— Պառկի՛ր, ավելորդ չխոսես,— հրամայեց Անատոլին:

Գերին լուռ ենթարկվեց: Նրանք ինձնից հեռու էին մոտ հինգ-վեց մետր: Անատոլին բարձրացրել էր գերու շալվարի ձախ փողքը, օձի կծած տեղից ծծում էր արյունը և թքում: Երբ վերջացրեց, գերին աղերսագին դիմեց նրան.

— Վատ եմ զգում, դեռ չի անցել, ախպե՛րս, խնդրում եմ մի քի՛չ էլ:

Անատոլին նորից կռացավ. այդ նույն վայրկյանին անծանոթը աջ ոտքով ուժգին հարվածեց նրա գլխին: Անատոլին անշարժ ընկավ նրա ձախ ոտքի վրա: Ավտոմատս Անատոլիի ուսին էր: Իմ գրպանում լրտեսից խլված ատրճանակն էր: Ձախ ձեռքով հազիվ հանեցի ատրճանակը, և երբ շարժվեց իմ կողմը, այն արդեն ուղղել էի նրան: Կանգ առավ:

— Լսի՛ր, Վահա՛ն,— հայերեն դիմեց ինձ,— դու էլ սրա նման հիմար չես, գա՛ծ դիր ատրճանակը, արձակի՛ր ձեռքերս,— զարմանքից քար կտրեցի. որտեղի՞ց գիտեր անունս, հայերեն խոսում էր անսխալ առոգանությամբ: Նայում էի ինձ հառված աչքերին ու չէի կարողանում որոշել, թե ինչ գույնի են... Հիշեցի, հիշեցի, Անատոլին ճանապարհին տվեց անունս, ահա թե որտեղից գիտե: Բայց ի՞նչ ազգից է, ի՞նչ պտուղ է: Նա մի քայլ արեց: Ես կրակեցի օդում:



Մեխվեց տեղում: Նրա ետևի թփերը շարժվեցին: Աչքերս նորից մշուշվում էին:

— Չը՜... շարժվես,— արտասանեցին չորացած շուրթերս, բայց իմ ձայնը չլսեցի նույնիսկ ես: Զգացի, որ կորցնում եմ գիտակցությունս ու որոշեցի կրակել, սպանել թշնամուն: Սակայն նույն պահին թփերը նորից շարժվեցին, լսվեց շան հաչոց: «Մերոնք են»,— առկայծեց ուղեղիս մեջ և թուլացած իջեցրի ձեռքս...

Բացեցի աչքերս. այս ի՞նչ է, նորից խոտերի մեջ եմ, ամայի դաշտում, Անատոլին դարձյալ ընկած է գետնին, նրա կողքին երեսնիվայր պառկած է մեր գերին, վիզն արյունոտված է: Հայացքս դանդաղ վեր եմ բարձրացնում. նրա մեջքին հաղթականորեն կանգնած է մի գամփռ, ոչխարապահ մի սովորական գամփռ, որին մեր կողմերում «գելխեղդ շուն» են ասում: Բարի աչքերով նայում է ինձ. մոխրագույն, գեղեցիկ աչքեր ունի: Սկսեց կլանչել, հետո հաչեց: Նրա տակի մարդը շարժվեց, բայց գամփռն իսկույն իր երախն առավ նրա վիզը, գերին անշարժացավ: Շունը նորից հաչեց: Անատոլին երևի ձայնից սթափվեց, շարժվեց, ձեռքով շփեց գլուխը, նստեց տեղում, բայց նկատելով գամփռին, բնազդաբար՝ վախեցած ետ ցատկեց: Շունը մտերմաբար կլանչեց: Երբ Անատոլին ինձ ոտքի կանգնեցրեց, տեսա հեռվում արածող ոչխարի հոտը: Մի խումբ սահմանապահներ գնում էին հոտի կողմը: Անատոլին կրակեց օդում: Սահմանապահները շուռ եկան ու նկատեցին մեզ: Գամփռը վազում էր դեպի հոտը, իսկ անծանոթը նստել էր նույն տեղում ու կատաղած մեզ էր նայում: Այդպես էլ չկարողացա որոշել, թե ինչ գույնի են նրա աչքերը...

## ՍԱՀՄԱՆԻ ՄՈՏ

Լցվում է սիրտս հպարտությամբ վեհ,
Որ անծայրածիր մեր ազատ երկրում,
Տարբեր ազգերի զավակներն եկել,
Ինձ հետ մեր հայոց սահմանն են հսկում:

Նրանք հարազատ եղբայրներն են իմ,
Եվ ոչինչ, ոչինչ չի բաժանում մեզ,
Հայացքում նրանց՝ պայծառ, մտերիմ,
Մեր հայրենիքի սերն եմ տեսնում ես:

Եղբայրորեն եմ ես նայում նրանց,
Որ հեռվից եկել հողն իմ արևոտ
Ու խաղաղ կյանքի երազը սրտում՝
Կանգնել են ինձ հետ մեր սահմանի մոտ:

ՍԱՄՎԵԼ ԱՋԱՏՅԱՆ

Երևան, № 139 դպր. 9-րդ դաս. աշ.

## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅԱՆ ԴԱՍ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Քարտեզի վրա պարզապես նկարված են
Դաշտերը՝ կանաչ գույնով,
Լճերը՝ կապույտ,
Լեռներն էլ իրենց առանձին գույնով,
Եվ հետո թվեր,
Որ բարձրությունն են ցույց տալիս նրանց:
Իսկ սահմանագիծը կարմիր գույն ունի՝
Հայրենիքի գույն,
Իսկ այդ գույնն ունի իր պատմությունը՝
Արյունով գրված,
Որը քարտեզին չկա նկարված:
Քարտեզի վրա չկա և ձյունը լեռներին նստած,
Չկա գիշերը և քամին չկա,
Եվ ցուրտը չկա, շոգն ու անձրևը,
Ոտնաձայն չկա, նաև ոտնահետք
Եվ հետապնդում, կրակոց ու կանչ,
Խավարը ծակող լուսարձակները,
Եվ զինվորները ավտոմատավոր,
Որոնք արթուն են, երբ մենք արթուն ենք,
Որոնք արթուն են, երբ մենք քնած ենք,
Եվ հոգնությունից, լարումից սաստիկ
Արյուն է լցվում աչքերը նրանց, սակայն չեն
փակվում,
Ու փայտանում են մատները ցրտից—
Բայց միշտ պատրաստ են ձգանի վրա
ավտոմատների...
Սահմանի վրա, ասել է թե՝ մարտի թեժ դաշտում,
Առաջին գծում, ու ոչ մի քայլ ետ,
Իսկ երբ թշնամու գնդակից խոցված ընկնում են
հողին,
Այնպես են ընկնում,
Որ նաև անշունչ մարմնով իրենց
Ճանապարհները փակեն թշնամու...



# ՎԻՏՅԱ ԳՈՆՉԱՐՈՎԻ ՊԱՏՄԱԾՆԵՐԸ

*ՄԱՐԻՆԱ ՎԻՇՆԵՎԵՑԿԱՅԱ*

*Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ*

## ԵՐԿՈՒ ՏԱՍՆՕՐՅԱԿ

Մի երկու տարի առաջ մի գիրք էի կարդում, որի գլխավոր հերոսն ասում էր ընկերոջը. «Կանայք թույլ են, մեր բոլոր դժբախտությունները նրանցից են գալիս»: Այն ժամանակ ես փոքր էի, զարմացա, քմծիծաղ տվի և շարունակեցի կարդալ: Եվ ահա միայն հիմա եմ հասկանում այդ մտքի ամբողջ խորությունը:

Բառացիորեն մի շաբաթ առաջ Լենա Պտիչկինան դասարանի անկյունում հայտարարություն էր փակցրել. «Այսօրվանից մեր դասարանում անցկացվում է ասպետության տասնօրյակ: Ամենաքաղաքավարի և ամենաբարեկիրթ տղան կկոչվի 7 ա-ի ասպետը: Ժյուրին է դասարանի գեղեցիկ սեռը»:

Ես մտնեցա հայտարարությանը հենց այն ժամանակ, երբ Բորիս Տոլմաչովը ջնջելով «գեղեցիկ» բառը, տեղը խնամքով գրեց «զարհուրելի»:

— Տոլմա՛չով,— ատամների արանքից զայրացած ասաց Լենան,— դու ունեցար մինուս երեք միավոր:

Ահա և, մտածեցի, սկսվեց... Եվ իրոք, չհասցրեցի մի կարգին մտածել, որ իսկապես սկսվում է, երբ դասարանի մյուս ծայրից Լուսյա Տելեգինան հանկարծ գոռաց.

— Գոնչա՛րով, մատիտս չգիտեմ ուր ընկավ, խնդրեմ օգնի՛ր գտնեմ:

— Ի՞նչ,— վրդովվեցի ես:

— Վեց միավոր կվաստակես,— վրա բերեց Պտիչկինան:

— Ի-ի՞նչ...— կրկնեցի ես,— շա՛տ պետքս է...

Բայց հենց այդ պահին Բորյան պոկվեց տեղից և, թշնամու տանկի տակ նետվողի պես, նետվեց Լուսյայի նստարանի տակ, երեք մետր շառավղով իր վրա առնելով հատակի փոշին, և ինքն իրենից շատ գոհ, մատիտը մեկնեց նրան:



Այո՛, Լուսյան նրան դուր էր գալիս: Այո՛, նա Լուսյայի համար ոչ միայն մատիտ, նա Լուսյայի համար եռանկյան չորրորդ կողմն էլ կարող էր գտնել... Բայց այդպես ծախե՛լ ընկերոջը: Արդեն գնում էի դեպի Բորյան, որ ասեմ այն ամենը, ինչ մտածում էի նրա մասին, երբ ներս ընկավ Կոստյա Գալսկին՝ ձեռքին Վերա Վոլկովայի պայուսակը: Աղջիկները հրճվանքից ճիչ-աղաղակ բարձրացրին և սկսեցին բացականչել, ինչպես բացականչում են անուրդում.

— Տա՛սը միավոր... Չէ՛, տասնհի՞նգ:

...Այդ ամբողջ օրը ես լարված մտածում էի. սրա վերջն ի՞նչ է լինելու: Բոլոր տղաները, առանց բացառության բոլորը, իրենց սանձերը տվել են գեղեցիկ սեռի ձեռքը, այս մեկ: Այդ ֆոնի վրա ես սպիտակ ագռավ եմ երևում. այս երկու: Բորյան դավաճան է և Դոն-Ժուան, այս երեք: Պետք է մի բան ձեռնարկել, քանի դեռ բոլոր ընկերներս վերջնականապես խելքները չեն թռցրել, այս չորս: Բայց ի՞նչ: Ի՞նչ: Երեկոյան մեկ էլ հանկարծ գտա: Վրա ընկա հեռախոսին և զանգահարեցի Պտիչկինային:

— Դու գաղտնիք պահել կարո՞ղ ես,— խիստ ձայնով շշնջացի ես խոսափողի մեջ:

— Ի՞նչ կա որ,—Լենան փորձեց մտնել բուն խնդրին:

— Այն, որ քեզ ուզում եմ մի բան հաղորդել:

— Ես ամբողջովին ուշադրություն եմ և լուռ՝ գերեզմանի պես,— երդվեց Պտիչկինան:

— Դե, ուրեմն, լսի՛ր,— բսկրսեցի ես,— մենք տղաներով մեր դասարանում անց ենք կացնում հպարտության և անմատչելիության ընդհատակյա տասնօրյակ, ուզում ենք որոշել, թե 7 ա-ի ամենահպարտ աղջիկն ո՞վ է: Ո՞վ է, որ ոչ ոքի թույլ չի տալիս իր պայուսակը տանել և թույլ չի տալիս, որ դասարան մտնելիս ճանապարհը զիջեն իրեն:

— Իսկ դու ինչո՞ւ ես այդ դուրս տալիս ինձ մոտ, երբ ձեր տասնօրյակն ընդհատակյա է,— զարմացավ Լենան:

Հը՛մ: Ի՞նչ պատասխանել: Ստիպված էի մի բան հորինել:

— Պարզապես հարկադրական միջոցառում է սա: Ձեզանից ամեն մեկն արդեն մինուս յոթանասուն միավոր ունի:

— Այդ ինչպե՞ս:

— Որովհետև ձեզանից մեկը խնդրում է իր մատիտը գետնից բարձրացնել, մյուսը նշան է անում, որ իր ետևից գրատախտա-

կը սրբեն... Մենք չենք կարող հաշիվը պահել, բոլորդ միայն միավորներ եք վաստակել:

— Ա՜...— համաձայնեց Պուտիչկինան,— որ այդպես է, իհարկե, դե, շնորհակալ եմ քեզանից... Վի՛տյա: Նկատի կունենամ:

Լենայի հետ ես արդեն սովորում էի վեց ու կես տարի և շատ լավ գիտեի, որ ողջախոհությունը թույլ չի տա նրան այս գաղտնիքը մյուսներից թաքցնել: Կարճ ասած, հետևյալ օրը իմ «ընդհատակյա» տասնօրյակի մասին գիտեր այսպես կոչված ողջ գեղեցիկ սեռը: Միևնույն ժամանակ մյուս սեռը չկռահեց և ոչ մի բան: Բոլոր հինգ դասամիջոցներին ես մեռնում էի ծիծաղից, տեսնելով, թե ինչպես Գալսկին ապարդյուն խնդրում է Վերա Վոլկովայից նրա պայուսակը, իսկ Բորյան, դարձյալ ապարդյուն, հերթապահում է Տելեգինայի նստարանի մոտ, հույս ունենալով, թե Լուսյան ձեռքից որևէ բան կգցի: Մի խոսքով, ասպետության տասնօրյակը ձախողվեց լավագույն ձևով: Տղաները ոչինչ չհասկացան, իսկ աղջիկներն էլ իրենք իրենցից շատ գոհ էին, ամեն մեկն համարում էր, թե ինքն է ամենաանմատչելին:

Սակայն այդ օրը երեկոյան Պուտիչկինայի զանգը իմ լավ տրամադրությունը փչացրեց:

— Վերացրե՛ք ձեր տասնօրյակը,— պահանջեց նա,— դրանով դուք տապալում եք մեր տասնօրյակը: Այսօր ձեզանից ո՛չ մեկը ո՛չ մի միավոր չի շահել:

— Ո՛չ,— պատասխանեցի ես,— մենք չենք կարող վերացնել: Ավելի լավ է դուք ձե՛րը վերացրեք: Այնինչն, ես, գուցե համաձայնեի մերը վերացնել, բայց տղաները դեմ կլինեն: Եվ բացի այդ, կներե՛ք դուք, ձեզանից շատերը ոչ թե միայն յոթանասուն, այլ միայն քառասուն ունեն: Իսկ քոնը, Լե՛նա, արդեն միայն քսան է:

Այստեղ զգացի, որ Պուտիչկինան սկսեց միտք անել և ասաց.

— Ո՛չ,— ասաց,— մենք մեր տասնօրյակը վերացնել չենք կարող, այդ արդեն մտել է Մարիա Պավլովնայի դաստիարակչական աշխատանքների պլանի մեջ: Այնպես որ արի հաշտ ու խաղաղ համաձայնության գանք:

— Խնդրեմ, դու,— ասացի,— Մարիա Պավլովնայով մի՛ վախեցնի: Դու,— ասացի,— արի շատ մի՛... թե չէ հպարտության և անմատչելիության ոչ թե տասնօրյակ, ամբողջ միամսյակ կհայտարարենք: Այն ժամանակ կտեսնենք:

Կարճ ասած, Լենայի հետ համաձայնության չեկանք: Իսկ նա, ինչպես պարզվեց, դրանով չէր հանգստացել, սկսել էր զանգահարել մյուս տղաներին: Զանգահարել էր Տոլմաչովին, նա էլ, իհարկե, «ինչպե՞ս», «ե՞րբ», Գալսկուն է զանգահարել, նա



նույնպես՝ «ո՞վ», «որտե՞ղ»: Մի խոսքով, մի երեկոյի ընթացքում Պուտիչկինան այնքան հարցական դերանուններ և մակբայներ է լսում, որ ամբողջ կյանքում հերիք էր իրեն:

...Մանրամասնությունների մեջ չընկնելով՝ ասեմ, որ ինձ չքոթակեցին. պատճառը գուցե այն էր, որ տղաները հանդես բերեցին ասպետություն և կամ աղջիկները՝ հպարտություն. 7 ա-ի ասպետ նրանք կոչեցին Կոստյա Գալսկուն: Ճիշտ է, ինձ էլ չմոռացան, գեղեցիկ սեռը ինձ հայտարարեց «հպարտության ու անմատչելիության» տասնօրյակի հաղթող:

# ՄԱՐԶՈՒՄ

Մի օր մեծ դասամիջոցին դասարան եմ մտնում, տեսնում այնտեղ աներևակայելի մի բան է կատարվում: Միտյա Գալիցինը իր նստարանից է գոռում, բռունցքները թափ տալիս: Բորիս Տոլմաչովը լուսամուտի գոգից է իրեն ճղում, այնպես որ, ուր որ էր, ցած էր գլորվելու: Աղջիկները ծղրտում էին, իսկ Լենա Պուտիչկինան (երևում է արդեն խռպոտած) կավիճով գրատախտակին գրում էր. «Խնդրում եմ՝ լռե՛ք»: Եվ միայն մեր տեղական ամենագիտունիկ Կոստյա Գալսկին էր մի կողմ կանգնած արհամարհանքով դիտում: Հասկանալի է, նրան էլ մոտեցա, հարցրի.

— Ի՞նչ է պատահել, մի՞թե կարանտին է հայտարարվել:

— Ո՛չ,— պատասխանեց նա.— պարզապես 7 բ-ն մեզ հրավիրել է հնարամտության ու զըվարճության մրցման:

Զարմանքից սուլեցի: Եվ ուշքի գալուն պես, ինքս էլ բարձրացա իմ նստարանին և իմ հերթին սկսեցի գոռալ: Եվ քանի որ ես նոր էի սկսել, բոլորը գոռգոռալուց արդեն խռպոտել էին, իսկ իմ ուժերը դեռ տեղն էր:

— Թույլ չե՛նք տա ցեխ նետել մեզ վրա,— բղավեցի ես,— ցույց կտանք նրանց, թե ո՛ւմ հետ գործ ունեն:

Բոլորը համաձայն էին, ուզեցին խրախուսել, բղավել, բայց չկարողացան: Իսկ Պուտիչկինան նորից սկսեց գրատախտակին գրել. «Հարկավոր է կապիտան ընտրել: Առաջարկում եմ՝ Գոնչարովին»:

— Ի՞նձ,— չհասկացա ես,— բայց ախր ես հնարամիտ չեմ... թեև զվարճասեր եմ:

— Իհարկե՝ քեզ,— վրա է բերում Տոլմաչովը,— քո արտաքինն էլ է հարմար:

— Ամեն տեսակետից դու հարմար ես,— հազի միջից ասաց Գալիցինը,— վաղվանից մենք քեզ կսկսենք մարզել:

— Այո՛, այո՛,— արձագանքեցին բոլորը:



Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ




# ՈՐՏԵ՞Ղ ԵՍ, ՎՈԼՈ՛ԴՅԱ

*1943 թվականի ամռանը ֆաշիստական զորամասերը Վոլգոգրադում և Օրյոլի ու Կուրսկի աղեղի մարտերում մեծ պարտություն կրելուց հետո, փախել էին դեպի Արևմուտք և դիրքեր գրավել Հյուսիսային Դոնեց գետի արևմտյան ափերին: Մեր 3-րդ գվարդիական բանակը Ստալինգրադից մինչև Հյուսիսային Դոնեց գետը անցավ թեժ մարտերով: Հյուսիսային Դոնեց գետի ձախ ափին դիրքեր գրավեցինք և սպասում էինք լրացուցիչ տրանսպորտի ու մարդկանց՝ զորաբաժինները համալրելու համար:*

*Ամառային շոգ օր էր: Դոնեցի գետափին՝ մի գյուղական տնակի մոտ պառկած աչալուրջ հետևում էինք հակառակորդի դիրքերին: Ես ուղղում էի հեռադիտա-*

Եվ իրոք, հետևյալ օրը հենց առաջին դասին երկտող ստացա. «Մոծակի քթից ավելի նուրբ ի՞նչ կա» ...Իսկապես, ի՞նչն է դրանից նուրբ: Մա՞զը: Ծիծաղելի չի՞: Ոստա՞յնը... Ես այնպես էի կենտրոնացած մտածում, որ մեր մաթեմատիկայի ուսուցիչ Անտոն Պետրովիչն ասաց.

— Կեցցե՛ս, Գոնչա՛րով, դու դեռ երբեք դասի ժամանակ այդքան ջանասիրաբար չես աշխատել:

Այդ ինձ մի փոքր շեղեց, բայց և այնպես ես պատասխանը գրտա. «Մոծակի քթից ավելի նուրբ է մեր կապիտանի հումորը»:

Դասամիջոցին բոլորն սկսեցին ինձ գովել: Բայց այդ ժամանակ Տոլմաչովը, չգիտեմ ինչու, ձեռքերի վրա կանգնեց, ոտքերը վերև պարզելով, և ձախ ոտքով քորեց աջ ոտքը:

— Ի՞նչ էր այս նշանակում,— ուղղվելով, հարցրեց նա:

— Միշտ որ, այդ ի՞նչ էր նրշանակում,— զայրացավ հավաքարարուհի մորաքույր Շուրան և Բորիսին քարշ տվեց դիրեկտորի մոտ:

— Երեսո՛ւն վայրկյան ժամանակ՝ մտածելու համար,— հասցըրեց գոչել Բորիսը:

Բոլորը նայեցին ինձ:

— Այդ նշանակում էր,— ըսկըսեցի մտածել,— որ... որ Բորյան ցույց տվեց, թե ինքն ինչպես է իր ուղեղը շարժում:

— «Երեքի» պատասխան,— եզրակացրեց Գանսկին, և գրեթե բոլորը նրա հետ համաձայնեցին:

— Քեզ պետք է մի լավ մարզենք,— հառաչեց Պտիչկինան և աքլորի պես երեք անգամ կանչեց,— իսկ այս ի՞նչ է նշանակում:

Կարճ ասած, այդ ամբողջ օրն անցավ այդպես: Վերջին դասին ինձ համար արդեն երեսուն վայրկյանն էլ շատ էր: Հարցը դեռ չտրված՝ հետևում էր պատասխանը: Երբ պատմության դասին ես պատասխանում էի առաջադրանքի տասնմեկերորդ կետին, որ ուղարկել էր Գան-



կը, որ պարզ տեսնեմ, թե թշնամին ինչ է անում գետի մյուս ափին: Տնակի հյուսիսային ճեղքված պատի արանքից երևացին երկու կին, նրանցից մեկի գրկին երեխա կար: Մոտենալով, երեխան թողեց մոր պարանոցն ու սկսեց ժպտալ: Ես նրան հյուրասիրեցի շաքարով:

— Անունդ ի՞նչ է:

— Վոլոդյա,— պատասխանեց նա:

Ես նորից նրան շաքար տվեցի:

— Հաց չունե՞ք,— հարցրեց մայրը,— երեխաս երկու օր է հաց չի կերել:

Ես և կապիտան Խվորովը այդ օրը կես հաց, մի տուփ պահածո, երկու հարյուր գրամ երշիկ և հինգական կտոր շաքար էինք ստացել: Այդ ամենի կեսը տվեցինք Վոլոդյային ու մորը:

Երեխան հափշտակեց հացը: Ես մտքով սլացա Երևան... Վոլոդյայի մայրը շեշտակի նայեց ինձ.

— Դուք երեխա ունե՞ք:

Ես ցույց տվի իմ ընտանիքի խմբանկարը, ուր մայրս էր, ես, կինս և երեք երեխաներս:

Վոլոդյայի մոր աչքերը թրջվեցին, ընկերուհունը՝ նույնպես:

— Ոչինչ, պատերազմը շուտով կվերջանա, մենք նորից կուշտ ու երջանիկ կլինենք,— մխիթարեցի ես:

Նրանք մեզ բարին մաղթելով, թաքնվեցին պատի ետևը, որովհետև ֆաշիստները սկսել էին կրակել և գնդակները մեղուների նման բզզում էին օդում: Արնանման արևը մայր մտավ արևմուտքում, գիշերը թևերը փռեց ռազմադաշտի վրա: Երբեմն երկնակամարի խավարում առկայծում էին թշնամու լուսարձակները և լուսավորում մեր դիրքերը: Գնդացիրների մահացու գնդակները խախտելով Դոնեց գետի շրջապատի անդորրը, ճեղքում էին երկնակամարը և անհետանում:

Հրաձգության աղմուկից վախեցած շները կաղկանձելով վազում էին դեսուդեն: Քնի կարոտ մեր աչքերը վայրկենապես խփվում ու նորից բացվում էին այդ քաոսում: Գիշերը ես քնել չկարողացա. քաղցած էի, բայց թեթև էր հոգիս, որովհետև Վոլոդյան կուշտ կերել ու անուշ քնել էր:

* * *

Տեսնես որտե՞ղ է հիմա Վոլոդյան: Այն ժամանակ նա երկու տարեկան էր, հիմա կլինի 33 տարեկան: Որտե՞ղ է աշխատում, ի՞նչ է անում իր ժողովրդի համար: Ինչպիսի՞ն է դարձել:

ԱՐԻՍՏԱԿԵՍ ՍԱՀՐԱԴՅԱՆ
Գվարդիայի պահեստի գնդապետ,
ինժեներ, Հայրենական
մեծ պատերազմի վետերան

սկին, Ելենա Նիկոլաևնան կանչեց ինձ գրատախտակի մոտ:

— Գոնչա՛րով,— հարցրեց նա,— ինչո՞վ ես բացատրում Ռուսաստանի հեղինակության բարձրանալը Պետրոս Առաջինի իշխանության օրոք:

— Իր՝ Պետրոս Առաջինի բարձր հասակով,— վրա բերի ես:

Դասարանը ցնծաց: Բոլորն ուրախ հայացքներ փոխանակեցին. տեսնում էին իրենց ջանքերի պտուղները: Իսկ ես... հազարից մեկ այդ անգամ պատմության դասը սովորել էի... Եվ ահա... մարգվել եմ, այն էլ ինչպե՞ս:

Ելենա Նիկոլաևնան շարունակեց.

— Այդ դեպքում, անցած նյութից որևէ բան վերհիշենք: Կարո՞ղ ես ասել՝ ո՞րն էր Ալեքսանդր Նևսկու ամենամեծ ծառայությունը:

— Ինչո՞ւ չէ, կասեմ,— և ասում եմ.— Եթե նա չլիներ՝ գուցե Նևա գետը մինչև այսօր անուն չունենար:

Ելենա Նիկոլաևնան լուռ տարուբերեց գլուխը, և ես հասկացա, որ այսօր պատմության վերաբերյալ իմ հումորը սպառվեց:

Առաջիկա մրցումներում մենք այնուամենայնիվ հաղթեցինք: Բայց կապիտանի դերում հանդես եկավ Բորիս Տոլմաչովը, որովհետև նման առաջադիմության համար ինձ հանել էին:



# ԻՆՉ ԿԱՐՈՂ Է ԱՆԵԼ ՆԿԱՐԻՉԸ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Նկարիչը կարող է
Սովորական գույներով ու գծերով
Անսովոր մի աշխարհ ստեղծել:
Անձրևի սովորական կաթիլի մեջ
Նա կարող է նշմարել այն գույները,
Որոնք ներկելու են ծաղիկների թերթերը,
Որոնք ներկելու են ծառերի տերևները,
Որոնք լույս են դառնալու
Բացվող առավոտի համար:

Նկարիչը կարող է
Այնպիսի բնանկար ստեղծել,
Որի մեջ օդ լինի թռչունների համար,
Այնպիսի թռչուններ նկարել,
Որոնց թևերում ուժ լինի,
Օդում անվերջ ճախրելու համար:

Նա կարող է այնպես անել,
Որ ամպերը լցվեն անձրևի կաթիլներով,
Որ ամպերի ներքևում ծառեր հայտնվեն,
Եվ նրանցից կախված ճռների մեջ
Անձրևի կաթիլները շարվեն
Կարմիր հատիկների նման:

Նկարիչը կարող է
Այնպիսի խնձորներ նկարել,
Այնպիսի դեղձեր ու տանձեր,
Որոնք այնքան համեղ թվան,
Որ բկլիկ մի բալիկ
Հաճույքից շրթունքները լիզի:

Նկարիչը կարող է նկարել
Նաև լալկան մի տղայի,
Որը հետո թեկուզ հարյուր տարեկան դառնա,
Միևնույն է, մնալու է առաջվա փոքրիկը,
Արցունքոտ ու տխուր աչքերով:

Նա կարող է նկարել նաև փնթի մի տղայի,
Այնպիսի բնորոշ դեմքով,
Այնպիսի հագուստներով ու արարքներով,
Որ կոկիկ աղջիկները
Ծիծաղից թուլանան:

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Նկարիչը կարող է ստեղծել նաև
Հեքիաթներում եղած
Սև ու սպիտակ աշխարհները,
Այդ աշխարհները լցնել դևերով
Եվ բոլոր բարի ու չար կախարդներով.
Այդ աշխարհները լցնել
Հրաշք թռչուններով
Եվ նրանց կողքին
Մի լավ, մի կտրիճ տղա ևս ստեղծել,
Որն իր հրեղեն ձիով
Սլանում է յոթը սարից այն կողմ՝
Ոսկե խնձորներ բերելու:
Ահա այսպես նկարիչը կարող է
Մի նոր աշխարհ ստեղծել,
Որն իր հրաշք գույներով ու ձևերով
Դուր գա մեծերին ու փոքրերին,
Որ փոքրերին օգնի ճանաչելու կյանքը,
Եվ նրանց անմեղ հոգիները լցնի
Գեղեցիկը սիրելու զգացումով:

## ԶՐՈՒՅՑ ԱՐԱԳԻԼԻ ՀԵՏ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

— Թողած այնքան ծով ու երկիր,
Թողած այնքան հանդ-արոտ,
Ինչպե՞ս եղավ, քա՛ջ արագիլ,
Հայտնվեցիր դու մեզ մոտ:
— Անտառներից եկա խաս-խաս՝
Կարոտ ափին Արաքսի,
Հեռու տեղից եկա, տղա՛ս,
Կանաչ ափից Նեղոսի:
Անթիվ մանուկ տեսա ճամփիս,
Սև ու դեղին, թուխ ու շեկ,
Եվ միշտ ականջ դրած ճամփիս՝
Գոչում էին.
— Մեզ մո՛տ եկ:—
Թե՛ լավն էին ու թե՛ բարի,
Սիրում էին ինձ սրտանց,
Դրա համար ամեն տարի
Հյուր եմ գնում և՛ նրանց:
Քե՞զ էլ, ինչ խոսք, սիրում եմ ես,
Ճանաչում եմ ժիր Հայկին,
Չսիրեի թե որ ես քեզ,
Չէի՞ մտնի ձեր այգին:

# ՏԵՏՐԵՐԸ

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ



այոց լեզվի դասը նոր է սկսվել: Մեր դպրոցի ամենածեր ուսուցչուհին կանգնել է սեղանի մոտ, երկար շրջազգեստով, փոքրիկ ու կռացած, և որոնում է ակնոցները: Այսօր գրավոր ենք գրելու: Նշանակում է, քառասուն րոպե չեմ շարժվելու, չեմ խոսելու, նայելու եմ միայն իմ տետրին և ետևի նստարանից լսելու եմ Վրեժի հարցերը.

— Նվա՛րդ, այստեղ ստորակե՞տ է, թե՞ վերջակետ: Այս բառը ինչպե՞ս է գրվում, Նվա՛րդ, քեզ հետ եմ...

Դեռ լավ է, որ մեր նստարանը պատուհանի մոտ է ու մեկ-մեկ պատուհանից դուրս եմ նայում: Մեկը կարծես անվարժ ձեռքով նկարել է կապույտ երկինք ու դրել է պատուհանի դիմաց: Նկարել է հաստաբուն թթենիներ, ծուռ ու մուռ տներ՝ Կոնդ թաղամասի թթենիներն ու տները: Հետո ստվարաթղթից մի նարնջագույն շրջանակ է սոսնձել տների տանիքներից վեր, ստացվել է արևոտ օր: Այս բոլորն, իհարկե, իմ հնարածն է: Դասերից հետո Մայիսյան փողոցով տուն գնալիս ես գիտեմ, որ փողոցը փողոց է, տունը՝ տուն: Իսկ դասարանի պատուհանից թվում է՝ Կոնդ թաղամասը ինչ-որ մեկի անվարժ ձեռքի նկարածն է:

— Գիտե՞ք, ես տետրերը մոռացել եմ,— ասում է ընկեր Վանեցյանը:

— Գնամ բերեմ,— ուրախանում է Վրեժը:

Դասարանով աղմուկի ալիք է անցնում:

— Մինչև բերեն՝ ուշ կլինի,— ասում է Նազիկը:

— Թվաբանության ժամն էլ կվերցնենք, իսկ վաղը հայոց լեզվի փոխարեն թվաբանություն կպարապենք,— ելքը գտնում է ընկեր Վանեցյանը:

Բոլորը համերաշխ ձեռք են բարձրացրել: Բոլորն էլ ուզում են գնալ տետրերը բերելու:

Ոչ մի դասի ժամանակ այսքան շատ ձեռք բարձրացնող չի լինում:

— Մեր տունը ո՞վ գիտե:

— Ես մի քիչ գիտեմ: Որ հասցեն ասեք, իսկույն կգտնեմ,— ասում է Վրեժը:— Ես ձեզ մի անգամ եկեղեցու փողոցում եմ տեսել:

— Այդ ուրիշ փողոց է,— ասում է Գոհարը,— ձեր տան մոտ աղբյուր կա ու չորացած թթենի:

— Ճիշտ է,— ասում է ընկեր Վանեցյանը:

# ԾՂՐԻԳԻ ԵՐԳԸ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Ծղրիդն ապրում էր
Տատիկի տանը
Ու նվագում էր
Միևնույն բանը.
— Ճը՛ռ-ճը՛ռ,
ճը՛ռ-ճը՛ռ...

Մութը պահվում էր
Հին դռան տակը,
Աղքատ էր երգչի
Համերգացանկը.
— Ճը՛ռ-ճը՛ռ,
ճը՛ռ-ճը՛ռ...

Երկար ու երկար
Ձմռան գիշերը
Լարում էր ծղրիդն
Իր տխուր շերը.
— Ճը՛ռ-ճը՛ռ,
ճը՛ռ-ճը՛ռ...

Բայց հենց բացվում էր
Կանաչ գարունը,
Ծղրիդի երգը ·
Մեկեն մարում էր...
Էլ ձմռան ցրտից
Ոչ ոք չէր մրսում,
Եվ ծղրիդն արդեն
Երգում էր դրսում.
— Ճը՛ռ-ճը՛ռ,
ճը՛ռ-ճը՛ռ...

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ա՜յ թե երջանիկն է այդ Գոհարը, ե՞րբ է հասցրել իմանալ ընկեր Վանեցյանենց տունը։

— Գնա՞մ Գոհարի հետ,— խնդրում եմ ես։

Բոլորն էլ գիտեն, որ ես ու Գոհարը անբաժան ենք։ Եվ հետո դրսում գարուն է։ Այն փողոցներում, որտեղ հին եկեղեցի, աղբյուր ու չորացած ծառ կա, ես երբեք չեմ եղել, նրանք թվում են հեռու ու հրաշալի։

— Գոհարը հո մենակ չի՞ գնալու,— ասում է Վրեժը.— ճանապարհին շներ կլինեն, ես ճիպոտ ունեմ։

— Աշոտի հետ կգնա,— ասում է ընկեր Վանեցյանը։

Աշոտը ամենակարգապահ տղան է, կարծես աղջիկ լինի։

— Ես էլ գնամ, էլի՜,— խնդրում է Ծուշիկը։

— Լավ,— ասում է ընկեր Վանեցյանը,— երեքո՛վ գնացեք. միայն՝ շուտ։

Այս ի՞նչ անարդարություն է։ Ես Ծուշիկից առաջ գնալու թույլտվություն խնդրեցի։ Ծուշիկը շռշմածի մեկն է, Գոհարի հետ կարգին ընկերություն չեն անում, ես Ծուշիկից լավ եմ սովորում։

Ու որ ինձ հետ այդպես անարդար են վարվում, ես խղճահարություն եմ զգում ինքս իմ նկատմամբ ու աչքերս արցունքոտվում են.

— Ես էլ եմ գնում։

— Այս ի՞նչ բան է,— զարմանում է ընկեր Վանեցյանը։

Ես լացակումած ինչ-որ բաներ եմ ասում, փորձում եմ բացատրել, որ անարդարություն է կատարվում ու զգում եմ, որ Գոհարի, Աշոտի ու Ծուշիկի կողքին եմ՝ դռան մոտ։ Վրեժը իր ճիպոտը ձեռքին կանգնում է։

— Ես էլ գնամ, շուտ կգանք, ընկե՛ր Վանեցյան։

Ես չգիտեմ ինչ է անում ընկեր Վանեցյանը, որովհետև չեմ կարողանում նրա կողմը նայել։ Իսկ դասարանը խուլ բզզում է։ Մեր ետևից դուռը փակվում է։

— Ե՛տ գնա,— համոզում է Գոհարը,— դո՛ւ ետ գնա։

Գուցե իսկապես գնամ ներողություն խնդրեմ ու նստե՞մ։

— Ընկեր Վանեցյանն է ուղարկել,— դռնապան Սերոբ քեռին ասում է Վրեժը։

«Գուցե ես գնամ»։

Մտածում եմ անընդհատ, բայց չեմ գնում։

Սվերդլովի փողոցի բարձունքը քարքարոտ է։ Ձմռանը սառույցի երկար մի շերտ է ձգվում վերիցվար ու պայուսակներին նստած սահում ենք։ Եկմալյան փողոցում տները ցանկապատեր ունեն։ Ես աշխատում եմ մոռանալ դպրոցում պատահածը։ Ծիրանիները խելահեղորեն փթթել են։ Կոպերս փակում եմ ու աչքերիս առջև կարմիր, հրաշալի գույն է, աչքերս սեղմում եմ, կարմիրը ավելի է թանձրանում։ Դիպչում եմ Ծուշիկին ու բացում եմ աչքերս։

— Ընկեր Վանեցյանը կբարկանա, երևի գրավորից էլ գրկի։

— Կուշանանք,— ասում է Գոհարը։

Մենք վազում ենք։ Ես բոլորից առաջ եմ անցնում։ Հետո կանգնում եմ, որ մյուսներն ինձ հասնեն ու գլուխս ետ գցած նայում եմ ամպերին։ Ուզում եմ թավալվել այդ փափուկ ամպերի մեջ։

Գոհարը վախեցած շուրջն է նայում։

— Չհասա՞նք,— դժգոհում է Աշոտը։

— Կարծես թե այս կողմերում պիտի լինեն։

Ծառերի արանքից երևում է եկեղեցու գմբեթը։ Գոհարը անօգնական շուրջն է նայում։

— Տեսնես ինչքա՞ն ժամանակ է անցել,— ասում է Ծուշիկը,— նստել ու սպասում են մեզ։

— Մի բանով կզբաղվեն,— ասում է Վրեժը։

Այդ անհաջողությունից սիրտս ավելի է ճմլվում։ Ես ափսոսում եմ, որ եկել եմ։ Հիմա ինձ ո՛չ արևն է ուրախացնում, ո՛չ ծաղկած ծիրանիները։ Գոնե շուտ գտնեինք։

— Որ գտնենք, ետ դառնալը հեշտ է։

— Վազելով մի րոպեում կհասնենք,— ասում է Վրեժը։

— Գտա՜,— ճչում է Գոհարը։

Նրբանցքով քամու պես սուրում ենք առաջ։

Աղբյուրի մոտ մի կին դույլը ջուր է լցնում։ Տան դուռը փակ է։

— Ո՞ւմ եք ուզում,— տան մոտ կանգ է առնում ջուր լցնող կինը։

— Ընկեր Վանեցյանը ուղարկել է տետրերը բերելու, դուռը փակ է,— ասում է Ծուշիկը։

— Հա՛, տետրերը միջանցքում էր թողել, ես էլ տեսա։

— Դուք ընկեր Վանեցյանի ի՞նչն եք,— հարցնում է Գոհարը։

Ա՜յ թե համարձակն է։

— Հարևանը,— ասում է կինը,— միասին ենք ապրում։ Ես էլ ոչ ոք չունեմ, ինքն էլ. մի տղա է ունեցել, զոհվել է։

Մի դույլը Վրեժն է վերցնում, մյուսը՝ Աշոտը, ու մտնում ենք բակ։

Կինը մեր անուններն է հարցնում։

— Բոլորիդ մասին էլ լսել եմ։ Մի քիչ բարկացկոտ է, ճիշտ է, բայց ձեզ շատ է սիրում, քանի տարի է, թոշակի են ուղարկում, չի գնում։

Կինը տալիս է տետրերը։

— Շուտ-շո՛ւտ գնացեք։

Մենք վազում ենք այնքան, մինչև ծածկվում են աղբյուրը, թթենին։

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



*Մեր բակային ակումբները*

# ԲԱԿԻ ԱՌՕՐՅԱՆ ՓՈԽՎԵՑ

ԻՆՉԻՑ ՍԿՍՎԵՑ

1964 թվականի ամառային մի արևոտ օր Երևանի Թումանյան փողոցի №40 շենքի երեխաները որոշեցին ճամբար կառուցել: Իհարկե, որոշելը պնհամեմատ հեշտ էր: Բայց, երբ սկսեցին բակը մաքրել շինարարական աղբից, տեսան, որ դժվար գործ են ձեռնարկել:

Մաքրած տարածության կենտրոնում մի ձող տնկեցին, շուրջը մետաղալարերով կլոր շրջան կապեցին, իսկ մետաղալարերի վրա գույնզգույն թղթիկներ սոսնձեցին և բակային ճամբար ունեցան: Այստեղ հավաքվում էին բակի երեխաները, երգում, պարում, խաղեր կազմակերպում, ուրախ ժամանակ անցկացնում: Բայց տեղը այնքան փոքր էր, որ միայն մասնակիցներին էր բավարարում, իսկ հիացող ծնողները պատշգամբներից էին հետևում նրանց խաղերին:

Հաջորդ տարի մի քիչ էլ ետ քաշեցին շինարարական աղբը և փոքրիկ շտաբ կառուցեցին, հերթապահություն սահմանեցին, հրսկիչներ կարգեցին:

Մեծահասակները սկզբում հիանում էին նրանց աշխատասիրությամբ: Բայց լավ էր, որ այդքանով չբավարարվեցին և սկսեցին գործով էլ օգնել, ընդառաջել երեխաներին: Նրանց մեջ այնպիսի մասնագիտությունների տեր մարդիկ գտնվեցին, որ կարողացան մեքենաներ ու շինանյութ տրամադրել:

Բակի երեխաների ու մեծահասակների ուժերով քսան մեքենայից ավելի շինարարական աղբ դուրս տարան: Ճամբարի համար մեծ հրապարակ բացվեց:

Այլևս սպասելու հարկ ու ժամանակ չկար: «Հատակագիծը» նախօրոք կազմել, պատրաստել էին և անմիջապես սկսեցին ճամբարի շինարարությունը: Փոքրիկ, ֆաներապատ շտաբն իր տեղը զիջեց մեծ ու ընդարձակ նոր շտաբին: Կառուցեցին ակումբն ու լուսանկարչական սենյակը, էլեկտրականություն անցկացրին, ցայտաղբյուր տեղադրեցին և 1966 թվականից ճամբարը դարձավ բակային ակումբ, որը գործում է ամբողջ տարին: Ճամբարը կոչված է պահեստի գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանի անունով: Երբ գեներալը ճամբար է գալիս, այդ օրը տոն է նրանց համար: Պատերազմի արհավիրքներով անցած գեներալի հերոսական ու հետաքրքիր պատմությունները նրանք լսում են վառվող հետաքրքրասիրությամբ:

ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐԸ

Մեծ, երկաթե դարպասներով մուտքից առաջին անգամ բակ մտնողին հիացնում է շրջապատի գեղեցիկ ու տոնական տեսքը: Ամենուր ցուցատախտակներ են, վահանակներ ու պատի թերթեր, որոնցից շատ բան կարելի է իմանալ Քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմի, սոցիալիստական աշխատանքի ու պատանի

— Կեսը ի՛նձ տուր,— ասում է Վրեժը:

— Մի քանի տետր էլ տուր ի՛նձ,— խնդրում եմ ես:

Եթե գոնե մի քանի տետր ես տանեմ, համոզված եմ, որ ընկեր Վանեցյանը չի բարկանա:

— Ես կտանեմ,— ասում է Գոհարը:

Ա՜յ քեզ ընկերուհի: Վրեժը տետրերը քաշում է Գոհարի ձեռքից: Տետրերը թափվում են փոշու մեջ:

— Երկտարեցի,— ասում է Գոհարը:

— Վազենք,— առաջարկում է Աշոտը:

Քիչ-քիչ դպրոցը մոտենում է:

Վախից իմ ծնկները ծալվում են: Ինձ երևի կըտանեն դիրեկտորի մոտ, երևի ծնող կկանչեն, երևի դասից կզրկեն: Ես վազում եմ Ծուշիկի, Աշոտի, Գոհարի կողքով: Վրեժը առաջ է անցել: Արցունքները գլորվում, կախվում են քթիս ծայրից:

— Զգայիր,— ասում է Գոհարը,— հիմա էլ ինչո՞ւ ես լաց լինում:

— Ոչինչ չի ասի, կտեսնես,— հուսադրում է Ծուշիկը:

Ծիրանիները այլևս գեղեցիկ չեն, երկինքը կապույտ չէ, անծանոթ փողոցներն ինչպես ջրի երկու կաթիլ, նման են Կոնդ թաղամասին:

Այս ի՞նչ արեցի: Լաց լինելով՝ ես բարձրանում եմ աստիճաններով: Ծուշիկը, Աշոտը, Վրեժն ու Գոհարը թափով ընկնում են դասարան, իսկ ես սրբում եմ արցունքներս, որոնք, միևնույն է, հոսում են... Ես մնում եմ կանգնած դասարանի դռան ետևում:



*Լուսանկար՝*
*ՄԻՔԱՅԵԼ ՔՈՉԱՐՅԱՆԻ*

հերոսների մասին: Իսկ ակումբի ներսում, տարբեր խորագրերով իրենց աշխատանքն են ներկայացրել խմբակները:

Մոտակա շենքերում բնակվող 120 դպրոցականներ են անդամագրվել ակումբին, և այս ամենը նրանց ձեռքով է ստեղծվել: Ակումբի անդամները հաճախակի բանավեճեր, գրքի քննարկումներ և հետաքրքիր այլ միջոցառումներ են անցկացնում: Իսկ հանդիպումները շատ են ու բազմազան: Ամենահետաքրքիրը սահմանապահների հետ անցկացվող հանդիպումներն են: Նրանք լինում են սահմանապահների մոտ, սովորում են սահմանին հետևելու ու սահմանախախտին հայտնաբերելու գաղտնիքներն ու եղանակները: Այդ պարապմունքին հաջորդում է մարտական ժամը: Զինվորները շատ մարզաձևերում են առավելության հասնում ակումբի անդամների նկատմամբ, բայց վոլեյբոլից ու սեղանի թենիսից միշտ պարտվում են:

Վերջում սահմանապահների համար համերգ են տալիս ակումբի անդամներն ու վերադառնում տուն:

## ԽՄԲԱԿՆԵՐԸ

Ակումբում գործում են ռադիոյի, ռադիոհաղորդավարուհիների, կինոսիրողների, լուսանկարիչների, ֆուտբոլի, շախմատի, շաշկու, գնդակով հոկեյի մոտ տասնմեկ խմբակ:

— Տեխնիկական խմբակների շատ անդամներ լավ են տիրապետում իրենց գործին, իսկ Ահարոն Չախուշյանը, Սերյոժա Նազարյանը, Ծերուն Եղիկյանն արդեն ինքնուրույն են աշխատում,— պատմում է ակումբի վարիչ Հովհաննես Գրիգորյանն ու ժպտալով ավելացնում.— Իհարկե, մարզական խմբակներն էլ վատ չեն դրսևորում իրենց: Մեր «Արագած» ֆուտբոլային թիմը մրցել է Շահումյանի անվան դպրոցի, տիեզերագնաց օդաչու Շատալովի, Աբովյանի անվան բակային ճամբարների, մանկական այգու թիմերի հետ և բոլորին հաղթել: Արայիկ Միքայելյանն ու Արմեն Մխիթարյանը առանց գոլ խփելու դաշտից չեն հեռանում, իսկ Վարդան Թորոսյանի պաշտպանած դարպասը անհնար է գրավել:

## ՆԱՄԱԿԱԳՐԱԿԱՆ ԿԱՊԵՐԸ

Շտաբի պատին փակցված աշխարհագրական քարտեզի վրա Երևանից 62 կարմիր թելեր են ձգվում Սովետական Միության ու սոցիալիստական երկրների տարբեր քաղաքներ: Ակումբի հասցեով ստացված նամակների հեղինակները սախալինցի, լեհ, չեխ, ռումին և այլ ազգերի պատանիներ են, որ գրում են իրենց հայրենի բնության, դպրոցի ու դասերի, ընկերների ու ծնողների մասին, այլևայլ հարցեր են շոշափում, կարծիքներ փոխանակում:

## ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ, ՈՐ ԱՎԱՆԴԱԿԱՆ ԵՆ ԴԱՐՁԵԼ

Ակումբի բոլոր անդամները տողանի էին շարվել, և շրջապատում ամեն ինչ տոնական տեսք էր ըստացել: Միայն Ռասինա Ասատըրյանն էր կանգնել ձողի մոտ ու հուզմունքից չգիտեր ինչ անել: Երբ մարեց բացման սկիզբն ավետող ազդանշանը, ընկեր Գրիգորյանը դիմելով ակումբի անդամներին, ասաց, որ այդ օրը Ռասինայի ծննդյան տարեդարձն է: Ակումբի վարիչը առաջինը շնորհավորեց նրան, հետո Ռասինան բարձրացրեց ակումբի դրոշը: Ընկերները շնորհավորեցին նրան, նվերներ հանձնեցին և մինչև ուշ երեկո երգեցին, պարեցին, բանաստեղծություններ արտասանեցին հոբելյարի պատվին:

Ակումբում հետաքրքիր ավանդություններից մեկն էլ «Շնորհավոր տոնդ, մայրիկ» միջոցառումն է: Ամեն տարի հանդիսավոր պայմաններում շնորհավորում են մայրիկների Մարտի 8-ը, իրենց պատրաստած նվերները հանձնում, երգ ու պարով, աշխույժ խաղերով զվարճացնում նրանց:

Ավանդական է դարձել նաև սահմանապահ բարեկամների Նոր տարին շնորհավորելը: Տոնի նախօրեին հյուր են գնում նրանց, տանելով տեսակ-տեսակ քաղցրավենիք, թխվածքներ: Չէ՛ որ նրանց մայրիկները շատ հեռու են և ակումբի անդամների այցելությունը ինչ-որ չափով լրացնում է այդ պակասը, տոնը ավելի ուրախ դարձնում:

* * *

Այստեղ անդամագրված երեխաներն իրենց ազատ ժամանակը աննպատակ թափառումներով անցկացնելու ցանկություն չեն ունենում: Ակումբի աշխույժ առօրյան օգտակար շատ բան է տալիս նրանց և ստիպում, որ լավ սովորեն, որովհետև ակումբը ծույլերին չի հանդուրժում:

Պատանի՛ բարեկամներ, եթե ձեր բակում չկա այդպիսի ակումբ, գուցե դուք էլ նախաձեռնեք: Ինչպես տեսաք, այս ակնարկի հերոսները փոքր գործից սկսեցին, բայց արդյունքը մեծ եղավ:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

# ԲԱՑՎԱԾ ԱՌԱԳԱՍՏ

Պատմական թանգարան, փոքրիկ նկարիչների ցուցահանդես, միջանցքներում տակառիկների մեջ աճող դեկորատիվ բույսեր, և էլի ուրիշ գործեր, որոնց հեղինակները Թումանյանի շրջանի Օձունի միջնակարգ դպրոցի պիոներներն են։ Աշակերտները ուսումնասիրում են Օձունի պատմությունը, գիտեն, որ դեռ միջին դարերում Օձունում դպրոց է եղել, որ գյուղական ուսուցիչ Սերգի Ջուրաբյանը, դարասկզբին, երբ ցարի հրամանով փակվել են հայկական դպրոցները, իր սաների հետ պարապել է Դեբեդի ձորի քարայրներում, սովորեցրել է նրանց ո՛չ միայն գրել ու կարդալ, այլ պատմություն, թվաբանություն, աշխարհագրություն, վայելչագրություն, և «երկուսներ» չեն ստացել նրա աշակերտները։ Եթե նրանց պատասխանից սիրելի ուսուցիչը դժգոհ է մնացել, նրանք շա՜տ են ամաչել և աշխատել, որ այդպիսի բան այլևս չկրկնվի։

Օձնեցի մանուկները ուսման առաջավորներ են, պիոներական լավ գործերի հեղինակներ, նրանց գիտեն իրենց ռուս, վրացի, մոլդավ, ուկրաինացի, բելոռուս բարեկամները։ Ահա բազմաթիվ նամակներ, որ այդ են վկայում։ Ահա այս մեկը Չեխոսլովակիայի Կամառնո քաղաքի հունգարական գիմնազիայի սաներն են գրել։ Նրանք խնամում են Հայրենական մեծ պատերազմում, իրենց քաղաքի ազատագրման մարտում զոհված օձնեցի կոմերիտական Ռուբեն Դավթյանի շիրիմը։

Այս մեկը՝ Բելոռուսիայի Բրյանսկի մարզի պիոներներն են գրել։ Նրանք օգնում են իրենց հայ բարեկամներին, որպեսզի սրանք հեռվից-հեռու ճանաչեն ու սիրեն իրենց հանրապետությունը։ Նրանց ուղարկած տասնյակից ավելի գրքերից են՝ «Մինսկի կրակները», «Պատմություն Պոլեսիայի մասին», «Սովետական Բելոռուսիան»։

Այս մեկն էլ կիրգիզ պիոներների նամակն է...

Այդ ամենի մասին նրանք պատմում են «Մեր կապը բարեկամների հետ» պատի թերթում։

Գյուղագիր Ս.Նուշավան Սրովյանի անվան պիոներական դրուժինան հետաքրքիր աշխատանքներ է կատարել «Միշտ պատրաստ» երթի մյուս երթուղիների ուղղությամբ։ «Գիտելիքների աշխարհում» երթուղու գծով հաճախակի կազմակերպվում են բովանդակալից և ուսանելի ցերեկույթներ, հավաքներ, որտեղ լսում են զրույցներ, զեկուցումներ տարբեր մասնագիտությունների, առարկաների շուրջ, իսկ վերջերս անցկացվեց «Գիտելիքների աշխարհ» տասնօրյակը։ Այս ամենը բարձրացնում են ուսման առաջադիմությունը։

Ամեն օր երկար դասամիջոցին պիոներական դրուժինայի խորհուրդը դպրոցի ռադիոհանգույցով պատմում է դպրոցական առօրյայի մասին, թվում նրանց անունները, ովքեր թերացել և վատ գնահատականներ են ստացել։ Թեև հիմա այդպիսիները քիչ են, բայց այդ քիչն էլ է անհանգստացնում նրանց։

«Դպրոցն առանց «երկուսների»— ահա՛ նրանց նշանաբանը։

Պատանի օձնեցիները վերցրել են գյուղի ծայրին, բլրի վրա, Հայրենական մեծ պատերազմում զոհված համագյուղացիների, երկինք խոյացած հուշարձան-կոթողի շեֆությունը։ Իսկ վերջերս կարդալով Նիկոլաևի մարզի Ժովտնևոյե քաղաքի «Օկեան» նավաշինական գործարանի կոմերիտական կազմակերպության կոմիտեի նամակը, որտեղ խոսվում է այն մասին, որ նավ է կառուցվելու հերոս կոմերիտականների, այդ թվում և Հունան Ավետիսյանի անունով, 7-րդ «բ» դասարանի աշակերտները, որոնց ջոկատը կոչվում է քաջ հայորդու անունով, արձագանքել են նավաշինարարների նամակին։

Պատանի օձնեցիների համար թանկ են իրենց հայրերի ու մայրերի, ավագ եղբայրների ու քույրերի հայրենանվեր աշխատանքը։ Վերջերս, երբ կրթվորուհի Արփենիկ Դավթյանը, մեխանիզատոր Գալուստ Դալլաքյանը, սովխոզի դիրեկտոր Ռուբեն Անթառանյանը պարգևատրվեցին կառավարական շքանշաններով, նրանք հանդիպումներ կազմակերպեցին և մեծարեցին արտադրության առաջավորներին։

Նրանց լավ գործերը շատ են, վաղն ավելի շատ կլինեն։

*ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ*



# ՍԱՄՈՒԴՐԱ

Ա. ԻՎԱՆՉԵՆԿՈ



Նկ. ԱՇՈՏ ԲԱՑԱՆԴՈՒՐԻ

Ջակարտայից գնում էինք Բագոր: Հանկարծ վարորդը կտրուկ արգելակեց: Մեր առջև բացվեց մի տեսարան, և ես զարմանքից քար կտրեցի: Տներից մեկի բակում կոկոսային արմավենին թափ էր տալիս մի վիթխարի պիտոն օձ: Ընկույզները թրմփոցով գետին էին ընկնում ռումբերի պես: Արմավենուց քիչ հեռու կանգնած էր ծղոտե գլխարկով մի մարդ և երաժշտով ձայնում էր.

— Վե՛ր, ավելի՛ վեր...

Աշխատանքը չընդհատելով, պիտոնը հնազանդորեն սողում էր դեպի կոկոսի գագաթը: Ծառաբնի շուրջը փաթաթված հաստ ու մուգ օղակները սեղմվում էին դեպի վեր՝ դեպի պիտոնի գլուխը, ապա գլուխը նոր գալարներ էր անում դեպի վեր, իսկ ներքևից զսպանակի նման սեղմվում բարձրանում էին իրանի ու պոչի գալարները:

Մենք վախվխելով մոտեցանք տանը, ծանոթացանք պիտոնի տիրոջ՝ Սարջիտոյի հետ, և պարզվեց, որ նա մասնագետ օձորս է: Նա երեսունյոթ տարեկան էր, միջահասակ, մկանուտ, և ինչպես ինդոնեզացիների մեծ մասը՝ նիհար: Իր մասին պատմելիս ամոթխած ժպտում էր:

— Այո՛, օձի բարքը չիմացողի համար օձ որսալը խիստ վտանգավոր է: Ես դա հորիցս եմ սովորել: Նա լավ օձորս էր: Մենք միասին որսի էինք գնում Սարանգանի կողմերը. այնտեղ շատ են բծավոր կոբրաները: Մի անգամ մենք կոբրայի հիսուն կաշի բերեցինք, հետո էլ՝ այս պիտոնին: Սա դեռ փոքրիկ ձագ էր, իսկ հիմա ութ մետրի է հասել, տասնչորս տարեկան է:

— Ինչպե՞ս կարողացաք ընտելացնել դրան:

— Ջահել պիտոնը հեշտ է ընտելանում: Նրան պետք է վարժեցնել մյուս գազանների նման: Մի րոպե, պարոնա՛յք, նա ծառը ջարդում է,— ընդհատեց զրույցը Սարջիտոն, փայտն առավ ու մի քանի անգամ թխկթխկացրեց արմավենու բնին: Պիտոնը ծառն այնպես էր ճոճում, որ թվում էր, թե ուր որ է ջարդելու էր:— Բավակա՜ն է, Սամուդրա՛, բավակա՜ն է, լսո՞ւմ ես: Լա՛վ:

Պիտոնը դժկամությամբ սկսեց ցած սողալ:

— Մի՞թե նա ձեզ լսում է,— հարցրի զարմացած:— Ասում են, թե օձերը խուլ են:

— Չգիտեմ, գուցե այդպես է: Ես սովորաբար սկզբում փայտով թակում եմ ծառաբնին և տատանումը բնով հաղորդվում է վերև: Պիտոնը չի կարող դա չզգալ: Բայց ինձ թվում է, թե նա լսում է իմ բոլոր հրամանները:

Երբ պիտոնը սողալով իջավ արմավենու ստորոտը, մենք վախից ետ-ետ քաշվեցինք դեպի տունը: Սարջիտոն ծիծաղեց.

— Մի՛ վախեցեք, Սամուդրան ձեզ բան չի անի: Հիմա կտեսնեք, նա գետին կիջնի ու կգնա իր տեղը՝ ա՛յ այն ծածկի տակ: Այնտեղ նրան սպասում է մի ճագար:

— Պարգև՝ աշխատանքի համա՞ր:

— Կենդանիներն այդպես են. նրանց հետ պետք է արդարացի վարվել: Նրանք ամեն ինչ հիանալի զգում են: Ա՛յ, նայե՛ք, նա գետին հասավ:

Այնուհետև պիտոնն իրեն այնպես պահեց, ինչպես տերն ասել էր: Նա մեզ վրա ուշադրություն չդարձրեց: Կանաչների միջով գալար-գալար սողաց դեպի ծածկը, որտեղ դրված էր հաստ ճաղերով մի փայտե վանդակ: Բայց

մեզ դարձյալ սարսափելի էր թըվում այդ ահռելի հրեշի կողքին կանգնած մնալը: Ես հարցրի, թե նա չի՞ դուրս գալիս՝ մտնում խճուղին:

— Չպետք է թողնել:

— Իսկ գիշերը կամ երբ դուք տանը չեք լինու՞մ:

— Չէ՞ որ նա վանդակի մեջ է: Եթե որսի եմ գնացած լինում, կինս նրան զբոսանքի է հանում միայն առավոտները: Նրան դուր է գալիս պտույտ տալ տան շուրջը: Ավագ որդուս է ամենից լավ լսում: Նրանք հասակակիցներ են: Մեր Սուտանտոն կարողանում է նրան պար ածել:

Սարգիտոն պատմեց, թե ինչպես է ինքը որսում պիթոններին: Սկզբում նա միս է ձեռք բերում որսին հրապուրելու համար: Միսը դնում է ու ինքը դարան մըտնում մոտերքում մի ծառի վրա: Երբեմն հարկ է լինում երկար սպասել: Անցնում է մեկ օր, երկու օր, բայց պիթոնը չի երևում: Փորձված որսորդը, միևնույն է, թաքստոցը չի լքում. վաղ թե ուշ պիթոնը կհայտնվի: Եվ երբ պիթոնը խայծը նկատում է, միանգամից չի նետվում ուտելիքի վրա ու խըժռում: Պառկում է խայծի մոտ, նայում, ապա ծույլ-ծույլ սկսում է կուլ տալ միսը: Մինչև կուլ տա վերջացնի, ժամեր կանցնեն: Ապա նա նույն ծուլությամբ մարմինը ոլորում է, դարս-դարս իրար վրա կիտում բուրգի նման: Եվ ահա, վերջապես, ժամանակն է: Գըլուխը դնում է գալարքի վերևում ու աչքերը փակում: Այժմ արդեն պետք է դուրս գալ թաքստոցից: Որոշելով քամու ուղղությունը, որսորդը զգույշ, գողեգող մոտենում է պիթոնին: Քամին պետք է որսորդի կողմը փչի, որպեսզի պիթոնը մարդու հոտը չզգա: Թե չէ՝ վերջը վատ կլինի: Այդ ծույլ-դանդաղկոտը ընդունակ է կայծակի արագությամբ հարձակվել թշնամու վրա: Սարգիտոն տեսել է, թե ինչպես մի անգամ խայծին միաժամանակ մոտեցել են վագրն ու պիթոնը: Զոլավոր գիշատիչը չի հասցրել ուշքի գալ, երբ հայտնըվել է վիշապի պողպատե գալարքների մեջ: Սարգիտոն ուզեցել է տեսնել, թե նրանցից որն է հաղթելու, և չի խանգարել նըրանց մենամարտին: Մոտ հինգ ժամ ձգվել է գոտեմարտը: Վերջ ի վերջո, պիթոնը հաղթել է վագրին:

Պիթոնին կարելի է գնդակով խփել միայն դարանից: Բայց դրա վատն էլ այն է, որ գլխին խփելու փոխարեն, որսորդը կարող է վրիպել ու խոցել օձի մարմինը, այսինքն՝ փչացնել օձի կաշին: Իսկ ծակծկված կաշին էժան է: Դրա համար էլ, Սարգիտոն հրացանի փոխարեն վերցնում է ատրճանակ ու թավշե փափուկ ձեռնոց, որը հագնում է ձախ ձեռքին: Պիթոնին մոտենալով, նա սկսում է մեղմորեն շոյել վիշապի վերին գալարքը միապաղաղ շարժումով՝ գլխից դեպի պոչը: Փափուկ ձեռնոցը ավելի խորն է քնեցնում պիթոնին, քան կուշտուկուռ ուտելը: Քաղցր շոյանքի մեջ վիշապը քնում է խաղաղ ու անվրդով: Երկու-երեք րոպե անց, Սարգիտոն թեթևակիորեն բարձրացնում է պիթոնի գլուխը, որպեսզի մարմնից այն կողմ դնի: Որոտում է կրակոցը, և նույն ակընթարթին որսորդը նետվում է որքան հնարավոր է հեռու: Գալարգալար դարսված վիշապը մեկ ակընթարթում պրկվում է գերանի նման: Հոգեվարքի մեջ նա կատաղիորեն ծեծկռտում, մտրակում է շուրջը: Նրա պոչի մի զարկը այդ պահին կարող է մի ձի սպանել:

Սարգիտոն պատմում էր ու ծիծաղում.

— Ոչի՛նչ, ես սովո՛ր եմ:

— Եվ ամենևին չե՞ք վախենում:

— Մի քիչ, իհա՛րկե... Ես աշխատում եմ կնոջս համոզել, թե իբր բոլոր պիթոնները մեր Սամուդրայի նման հեզ են:

---

# ԱՆԲԱՆ ՓՈՉՈՏԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

*Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ*

Խնձորենու ամենաբարձր ծայրին, որ մի ոստ երեք ճյուղի էր բաժանվում, իրենց բույնն էին գործում թրթուրները: Նրանք շատ էին, շա՜տ-շատ, շուրջ երկու հարյուր գլխից բաղկացած շինարարների մի կոլեկտիվ: Այնպես որ երկու օրում նրանք իրենց մարմնից արտադրվող մետաքսե թելերով ճյուղերի միջև տարածությունը դարձրին բերդի նըման մի բան, որի մեջ կարելի էր թաքնվել և պաշտպանվել անձրևից, փոթորկից և, մանավանդ, այն թևավոր հրեշներից, որ մեկ էլ տեսար երկնքից կայծակի նման խփեցին փախցրին իրենց ընկերներից մեկնումեկին:

Շտապում էին թրթուրները, որ լրիվ ավարտեն իրենց ամրոցը. բնազդով գիտեին, որ քանի ամրոցը պատրաստ չի, ապահովություն չկա իրենց կյանքի համար: Շտապում էին բոլորը, բացի մեկից, որը աչքի էր ընկնում իր մազմզոտ-փոչոտ մարմնով, դրա համար էլ ընկերները նրա անունը Փոչոտ էին դրել:

Գարնանը արևը այնպես դուրեկան էր տաքացնում գիշերվա ցրտից սառած նրա մարմինը, որ Փոչոտը զարմանում էր, թե ինչու իր ընկերները արևի շողերի տակ փռվելու և անուշ տերև խըժռելու փոխարեն, տենդով բռնված գործում են հա գործում:



— Կանենք, էլի՛, ի՞նչ եք շտապում,— նախատում էր նա ընկերներին՝ տերևի կոթունին մեկնված:— Ա՜խ, ինչ դուրեկա՜ն է արևը...

— Ամո՛թ ունեցիր, ամո՛թ... բոլորն էլ գործ են անում, մենակ քո լողրությունն է բռնել,— նախատում էր ընկերը, որին կոլեկտիվում հարգանքով Բանող մականունն էին տվել:

— Բանո՛ղ... թե ի՞նչ մի երևելի բան է հևալով աշխատելը, որ այդպիսիններին էլ մեծարում են,— ինքն իրեն փնթփնթում էր Փռշոտը, որին ընկերները Անբան անունն էին կպցրել:

— Հիմա՛ր, ո՛չ հանգիստ ունես, ո՛չ դադար... կարծես քո սեփական տունն ես կառուցում,— նախատեց նա Բանողին:

— Իսկ դու, շա՛տ խելոք, փորձիր մեն-մենակ, բերդի նման տուն կառուցել: Դա մեկի ուժերից վեր բան է, հասկացի՛ր: Իսկ եթե այս անձրևը...

Նրա խոսքը մնաց կիսատ. անձրևը հանկարծ փոխվեց կարկուտի: Երկնքից մի կտոր սառույց, կլոր ռումբի նման, թափով խփեց այն տերևին, որի կոթին Անբանը մեկնված անբանության իր քարոզն էր կարդում: Բոլոր աշխատավորներն էլ ափալթափալ լցվեցին իրենց կիսավարտ շենքի մեջ, նրանց հետևից էլ՝ Անբանը: Ահից նա գունատվել էր ու դողում էր ամբողջ մարմնով: Այն սառցե ռո՛ւմբը... Այն ի՞նչ հարված էր... Մի փոքր էլ շեղ խփեր՝ տեղնուտեղը ճխլվելու էր...

Այդ դեպքը Անբան Փռշոտի մութ ուղեղի մեջ մի թույլ շող առաջ բերեց. ուրեմն, իզուր չէ, որ իր ընկերներն այդպես առանց հանգստի ու դադարի գործում են հա գործում: Կարկուտը թմբկահարում էր մետաքսե կացարանի առաստաղը, նրա ծանր գնդիկները զարնվում էին մետաքսե ճկուն ցանցին ու ետ էին թռչում ռետինե թեթև գնդակների նման, և նրանց այդ հարվածներից Անբանը պատկերացնում էր, թե ինչ կլիներ իրենց ցեղի վիճակը, եթե կացարանը չկառուցեին:

Բայց հասկանալն ուրիշ է, գործը՝ ուրիշ: Հենց որ կարկուտը դադարեց և արևի շողերը նորից ընկան խնձորենու ճյուղերին, որդերի ամբողջ կոլեկտիվը, կարծես հրամանով դուրս թափվեցին թաքստոցից և շարունակեցին կիսատ թողած գործը: Բացի Անբանից. նրա ծուլությունը նորից բռնել էր ու իր սովորական տեղը մեկնված՝ սկսել իր հերթական ճառը.

— Կարկուտ մեկ էլ ո՞վ գիտի երբ է գալու... Ինչի՞ եք շտապում, ա՛յ խելոքներ...

Այդ պահին պարտիզպանը կանգ առավ ծառի տակ, վերև նայեց և տեսնելով, որ թրթուրները խլվլալով բույն են շինում, մեկնեց փայտի ծայրին ամրացված մկրատն ու՝ ղը՛րթ, կտրեց վարակված ճյուղը: Անբանը միայն այն է հիշում, որ ահագին ամրոցի հետ միասին ինքն էլ է գլորվում անդունդը...

Գնա՛ց, գնա՛ց, ճյուղերին զարկվեց ու մի տեղ «բանդ առավ»: Հարվածից ու անկումից շշմել էր: Երբ ուշքի եկավ, զգաց, որ ինքը մեն-մենակ մի տերևի վրա է: Նվնվաց, ճչաց, պատասխան չկա: Վրա հասավ սև, ահռելի գիշերը: Այդ պահին ինքն ընկերներով արոտի էր դուրս գալիս մետաքսյա վրանից: Հիմա վախից կծկվել էր իր տերևի վրա ու դողացնում էր:

Ի՞նչ ահռելի բան է եղել մենակությունը...

Լուսադեմին քնեց այնպես ամուր, որ երբ արթնացավ, արևն արդեն վառում էր: Դարձյալ մենակ էր և մի ինչ-որ անծանոթ վայրում: Նայեց դեսդեն, նկատեց, որ մի պսպղան թել գնալով երկարում է հարևան ոստին: Հասկացավ, որ իր ցեղակիցներից մեկնումեկը գործ է անում այնտեղ:

— Հե՛յ, ո՞վ կա էդտեղ...

— Ե՛ս եմ, Անբա՛ն... Արդեն արթնացե՞լ ես... Իսկ ես արևը ծագելուն պես սկսել եմ գործել...

Բանողի ձայնն էր: Ա՜յ քեզ պատահականություն...

— Դու ի՞նչ բանի ես էդտեղ,— զարմացավ Անբանը:

— Ե՞ս... Ի՞նչ բանի պիտի լինեմ՝ գործում եմ...

— Թո՛ւհ, գործել հա գործել, ուրիշ ուրախ բան չունե՞ս անելու:

— Ուրախը հենց դա է՝ գործելը: Պիտի գործենք, որ տուն ունենանք: Տուն պիտի ունենանք, որ ապրենք, վայելենք էս սիրուն աշխարհի բարիքները: Տուն պիտի ունենանք նաև, որ մեր սերունդը շարունակվի: Առանց տան՝ մենք մի տարում կբնաջնջվենք և մեր սերունդը կվերանա աշխարհի երեսից:

Տեսնո՞ւմ եք, որ Բանողը խելացի թրթուր էր և դատում էր որդերի ամբողջ ցեղի անունից, նրան մտահոգում էր փոքրիկ ու սիրուն թիթեռնիկների ապագան:

— Լսի՛ր, գլխիս ավետարան մի՛ կարդա,— անբանների ժարգոնով նախատեց Անբան Փռշոտը:— Գլուխս տարել էիք՝ գործիր հա՛ գործիր: Հազիվ պրծանք էդ գլխացավանքից, հիմի էլի՞ գործիր: Մի տես է՛, հարևա՛ն, ինչ լա՛վ է էստեղ,— մի պահ

մեղմացավ Անբանը և հրճվանքով նայեց շուրջը: Գվվում էր ծաղկած խնձորենին մեղուների ձայնից և այնպես էր անուշ բուրում, որ երանության մեջ մարդու քունը տանում էր:

— Ի՜նչ լավ է էստեղ, ազա՜տ...: Ու գլխից վերևը ոչ ոք չի կանգնում ու չի ստիպում, թե աշխատի՛ր:

—Թրթուրին անվայել բան մի՛ ասի,— նախատեց Բանողը:

Անբանը, որ դյուրաբորբոքի մեկն էր, բռնկվեց.

— Աղա՛, դու հո հսկիչ չե՞ս նշանակված իմ գլխին...

Ու սկսեց գանգատվել իր բախտից. «Էս անդունդն ընկանք, էլի չպրծա՞նք դրանից: Հենց դա՞ պիտի ազատվեր ու ինձ հարևան դառնար»:

Իսկ հարևանը հանգիստ և բարի անձնավորություն լինելով, չէր վիրավորվում ու շարունակում էր բարի իր խորհուրդները.

— Գո՛րծ արա, խելո՛ք, գո՛րծ արա, մի անկյո՛ւն շինիր քեզ համար, որ փորձանքի ժամանակ գլուխդ ազատես:

— Է՜հ, մի հոգու շինածն ի՞նչ պիտի լինի... Ա՜յ, ուրիշ բան էր մե՛ր համայնքը: Հիշո՞ւմ ես ինչ երկու օրում բերդ շինեցինք... Ա՜յ գործը... Նրա մեջ իսկապես կարելի էր ապահով ապրել:

Բանողը լսեց այս խոսքերն ու զարմացավ: Հիմա էլ ընդհանուր գո՞րծն է գովերգում... Ախր երեկ նրան էլ էր դեմ: Ինչպես երևում է՝ անբան մարդու համար պատճառներ են պետք:

— Այո՛, հարևա՛ն, մեր գործն ո՛ւր, համայնքի գործն՝ ուր... Բայց դե մարդիկ ասում են՝ ջուրն ընկնողը շյուղից էլ է կառչում... Կառուցենք մեր ուժերի չափով, գուցե մի բանի պետք կգա: Եվ առհասարակ ես զարմանում եմ, թե մարդ ո՞նց կարող է չաշխատել: Վե՛ր կաց, վե՛ր կաց, ինձ մի՛ խանգարի քո դատարկ խոսակցություններով:

Եվ Բանողը շարունակեց գործել իր ցանցը: Նա գիտեր, որ պիտի մտքից հանի բերդի կառուցումը և սկսի մի համեստ գործ: Այդպես էլ արավ. մի կուչ եկած տերևի եզրին ամրացրեց իր թելերը, ցանցը գործեց և մի դռնակ թողեց նրա անկյունում ու ներս մտավ: Ոնց որ մարդկանց շինած էստրադան՝ երեք կողմից կլոր ու կանաչ պատ էր, իսկ դիմացը փակված էր իր գործած ցանց-վարագույրով:

— Հարևա՛ն, շինածդ պալատ է, հո տո՛ւն չի,— ծաղրեց Անբանը և շարունակեց խրթխրթոցով ուտել այն կոշտ տերևը, որի վրա մեկնված էր:

Հանկարծ ճյուղերի արանքում երևաց թևավոր հրեշը: Վրա տվեց հարևանին, բայց սա, որ շեմքին կանգնած՝ իր նոր վարագույրի պարանն էր կապում, մի կերպ իրեն գցեց վարագույրի ետևը: Թռչունը դիմացի ոստին կանգնած մտածում էր. հարձակվի՞ փափլիկ որսի վրա, թե՞ ոչ: Որսը մի բարակ շղարշի ետև էր և պարզ երևում էր նրա երկար ու տռուզ մարմնի գալարումները... Ի՜նչ չաղլիկ կեր էր իր ձագերի համար... Բայց նրա բնազդն ասում էր. «Մի՛ խաբվի էդ շղարշի բարակությունից... Ասուր են դրա թելերը, կտուցդ կխճճվի մեջը»: Լսեց իր բնազդին մայր-ճնճղուկը և հուսահատված ետ թռավ և միայն այդ պահին աչքի պոչով նկատեց հարևան տերևին սսկված թրթուրին: Ափալ-թափալ վրա տվեց, բայց տեղը նեղ էր, մանր ճյուղերը խճճվելով իրար էին խառնվել, ուստի թևը զարնվեց ճյուղին և վրիպեց: Սաստիկ ցնցումից թրթուրը ցած ընկավ և սողաց մի պատահական տերևի տակ:

Փրկվեց, բայց վա՜յ էն փրկվելուն...

— Հը՛, ո՞նց ես, հարևա՛ն,— իր կացարանի դռնակից ցած նայելով՝ հարցրեց Բանողը:

Անբանն ուզեց մի խայթոցով պատասխանել, բայց լեզուն կարճ էր, ինչ աներ:

— Հիմա համոզվեցի՞ր, որ ամեն արարած բույն պիտի ունենա:

— Համոզվեցի,— խեղճացած պատասխանեց Անբանը:— Բայց դե, կանենք էլի... Հո ամեն օր թևավոր հրեշի չե՞նք հանդիպելու...

— Անուղղելի՛...— փնթփնթաց Բանողը և շարունակեց ամրացնել իր կացարանը:

Այդ գիշեր անձրևի փոթորիկ բարձրացավ, հողմը ուժգնորեն տանում-բերում էր խնձորենու կատարը: Անբանը իր մազոտ ճանկերը խրել էր տերևի մեջ և մի կերպ մնում էր նրան կպած, ինչպես ալիքների բերանն ընկած նավաբեկյալը՝ մի կտոր



տախտակի վրա: Մի կաթիլ անձրև շրխկոցով խփեց մեջքին, և դա հավասար էր նրան, եթե, ասենք, չորրորդ հարկից մի մեծ դույլ ջուր թափես ներքևում կանգնած երեխայի գլխին... Եկավ երկրորդ դույլը, երրորդը: Անբանը մի կերպ սողաց տերևի տակ: Հիմա, ոչինչ, առաստաղ ուներ իր գլխին, բայց ամբողջ գիշեր ճոճվում էր ուժգին և դողդողում էր ցրտից: Իսկ հարևանը քնած էր իր չոր ու տա-




*ՀամԼԿԵՄ Կենտկոմի բյուրոն հիմնադրել է նոր պարգև պիոներական ջոկատավարների համար՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պիոներական ջոկատավարին» նշանը։ Ստորև տպագրում ենք այդ նշանի մասին կանոնադրությունը։*

## ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՄԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ «ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋՈԿԱՏԱՎԱՐԻՆ» ՆՇԱՆԻ ՄԱՍԻՆ

*ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պիոներական ջոկատավարին» նշանով պարգևատրվում են դպրոցների, գիշերօթիկ դպրոցների, մանկատների, ամառային և բակային ճամբարների ավագ և ջոկատային պիոներական ջոկատավարները, որոնք երեք և ավելի տարիներ աշխատել են մանկական կոլեկտիվներում, դրսևորել են իրենց որպես աշխատանքին սանդղ-ծագործարար մանկավարժներ, նախաձեռնողներ և հասարակական կյանքի ակտիվ մասնակիցներ։*

*ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պիոներական ջոկատավարին» նշանով պարգևատրելու համար միութենական հանրապետությունների ԼԿԵՄ Կենտկոմները, մարզկոմները, երկրկոմները որոշումը ներկայացնում են ՀամԼԿԵՄ Կենտկոմ։*

*ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պիոներական ջոկատավարին» նշանի հանձնումը կատարվում է ՀամԼԿԵՄ Կենտկոմի անունից ՀամԼԿԵՄ Կենտկոմի անդամների, միութենական հանրապետությունների ԼԿԵՄ Կենտկոմների, մարզկոմների, երկրկոմների քարտուղարների միջոցով։*

*ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պիոներական ջոկատավարին» նշանի հետ հանձնվում է նաև վկայական։*

*Նշանը պետք է կրել կրծքավանդակի ձախ կողմը։*

քուկ քնում։ Երանի իրեն, նրա՞ն ինչ, թե դրսում փոթորիկ է։

Փոչոտն այդ գիշեր աչքը չկպցրեց։ Առավոտյան ելավ տերևի տանիքը, նայեց հարևանի կողմը։ Սա հորանջելով դուրս եկավ իր մետաքսե վարագույրի ետևից և կուշտ քնած մարդու տոնով հարցրեց.

— Ո՞նց ես, հարևա՛ն, գիշերը լա՞վ քնեցիր...

Այստեղ Անբանն այնպես զայրացավ, որ քիչ մնաց սրտի ամբողջ դառնությունը թափեր հարևանի վրա, բայց լեզուն կարճ էր...

— Լսի՛ր, Փոչո՛տ, դու քո ծուլությամբ մի փորձանք կբերես գլխիդ... Թե որ մենակ չե՞ս ուզում աշխատել, ե՛ս քեզ կօգնեմ...

— Որ ուզենամ՝ քո տանիցն էլ լավ տուն կշինեմ, քո օգնությունն ինձ հարկավոր չի,— բոլոր ծույլերի նման մեծախոսեց Անբանը։

— Դե, դո՛ւ գիտես...

Ասաց, հուսահատ թափ տվեց ձեռքը և շուռ եկավ, որ տուն մտնի, բայց դեռ շեմքին էր, երբ առավ այն ահռելի հոտը, որից իր ցեղակիցները ոչնչանում են գունդ-գունդ. պարտիզպանը ներքևում կանգնած, թունավոր հեղուկի շիթերն ուղղել էր խնձորենու վրա։ Մահացու ամպիկները արագությամբ խուժում էին ծառի խիտ սաղարթի մեջ և ողողում ամեն ծակուծուկ։

— Փախի՛ր, հարևա՛ն, փախի՛ր գլուխդ ազատիր,— գոռաց Բանողը և խուճապահար ներս ընկավ ու պարաններով ամրացրեց երկտակ վարագույրը։ Այդտեղից էլ սարսափած քաշվեց իր կացարանի ամենախուլ անկյունը, ուր նույնպես մի փոքրիկ բույն էր գործել՝ ամուր և անթափանց մետաքսից։

Իսկ անտուն-անբուն Անբա՞նը։ Նա դարձյալ սողաց տերևի տակ և կպավ նրա առաստաղից։ Այստեղ համեմատաբար ապահով էր, որովհետև թույնի շիթերը տերևներին խփվում էին դրսի կողմից։ Երբ թույնի փոթորիկն անցավ, Անբանն ուրախ մտածեց. «Էս անգամ էլ փրկվեցի՜...»

Ու մտքում հեգնեց հարևանին. «Հիմարը դադար չունի, գործիր հա գործիր... Բա տերևը տուն չի, ի՞նչ է... Առաստաղը կա՝ հերիք է... Բայց ես ինչո՞ւ եմ շշմած, գլուխս ինչո՞ւ է պտույտ գալիս... Սիրտս էլ խառնում է...» Որձկաց, փսխեց, հետո էլ տեսավ, որ փորահարինք է ընկել... «Այ քեզ բա՛ն, էս ի՞նչ պատահեց ինձ...» Ցավերից աղիքները կտրատվում էին, գալարվում էր ու նվում։ Հետո կարծես ներսում մի բան կտրվեց, իր բազմաթիվ ոտքերը դքվեցին-քարացան և շունչն սկսեց կտրվել։ Բերանը լայն բացեց՝ օդ չկար, օդը վերջացել էր բնության մեջ...

— Հարևա՜ն... Ի՞նչ եղի ես, հարևա՛ն ջան,— կարծես յոթը սարի հետևից լսեց դրացու ձայնը։

Ուզեց ասի.

— Մեռնո՛ւմ եմ, հարևա՛ն ջան... Ախր ես ո՞նց քեզ չլսեցի..

Բայց չկարողացավ. ծնոտները փայտացել էին։..




## ԽԱՉԲԱՌ — «ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ»

1. Չեխ անվանի կոմպոզիտոր, չեխական կլասիկ երաժշտության հիմնադիրը։
2. Իսպանացի կոմպոզիտոր և դաշնակահար, իսպանական նոր երաժշտության հիմնադիրը։
3. Ռ. Շտրաուսի երաժշտական դրաման՝ ըստ Օ. Ուայլդի համանուն ստեղծագործության։
4. Ժողովրդական երաժշտական ստեղծագործության ամենատարածված ժանրը։
5. Լենինյան մրցանակի դափնեկիր, սովետական նշանավոր դաշնակահար։
6. Ա. Տեր-Ղևոնդյանի օպերաներից։
7. «Մետրոպոլիտեն» օպերային թատրոնի երգչուհի։
8. Իտալացի երաժիշտ, ժամանակակից նոտագրության հիմնադիրը։
9. Մուսորգսկու ստեղծագործություններից։
10. Ուկրաինական և ռուսական ժողովրդական պար։
11. 17-րդ դարի իտալացի կոմպոզիտոր։
12. Ամերիկահայ ճանաչված դաշնակահարուհի։
13. Չեխ նշանավոր կոմպոզիտոր։
14. Ամերիկացի խոշոր կոմպոզիտոր Լ. Բեռնսթայնի օպերետը՝ ըստ Վոլտերի համանուն երկի։
15. Հայկական ժողովրդական երաժշտական գործիք։
16. Կոմիտասի երգերից։
17. Երաժշտական նշան, որի միջոցով հին Ռուսաստանում գրի էին առնում հնչյունները։
18. Աշխարհահռչակ թավջութակահար։

Կազմեց ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆԸ
Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի 2-րդ կուրսի ուսանող

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

### «ՊԻՈՆԵՐ» № 4

### ԽԱՉԲԱՌ-ԲԱՌԱՇՂԹԱ

1. [illegible] 2. [illegible] 3. [illegible] 4. [illegible] 5. [illegible] 6. Նալբանդյան։ 7. [illegible] 8. [illegible] 9. [illegible] 10. [illegible] 11. [illegible] 12. [illegible] 13. [illegible] 14. Արկտիկա։ 15. [illegible] 16. [illegible] 17. [illegible] 18. [illegible] 19. Վ. Կոտիկ։ 20. [illegible] 21. [illegible] 22. Խաչատրյան։ 23. [illegible] 24. [illegible] 25. [illegible] 26. [illegible] 27. [illegible] 28. Նար-Դոս։ 29. Սևակ։




Լույս է տեսնում 1923 թվականից։

# ՊԻՈՆԵՐ

№ 5 մայիս 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄՈՒՐԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։*
*Հեռախոսներ՝ 56—32—72; 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 04369։ Պատվեր 629։ Տպաքանակ՝ 80200։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 6/IV 1974 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9.
Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ՝ 10 Կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



# ԳԱՐՈՒ՛Ն,

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Հալվել է արդեն սարերի ձյունը,
Կանաչ խարույկ է գարունը վառել,
Երգով է լցվել մայր բնությունը,
Հավքերը հեռվից ետ են դարձել:

Այգում փայտեր է կտրում իմ պապը,
Չիբուխի ծուխն է ելնում թել-թել,
Ձեռքը տարել է քրտնած ճակատը՝
Խոր կնճիռներն է ուզում հարթել...

Կանաչ ծիծաղ է բերել գարունը,
Ուրախ են այնպես մանուկ թե մեծ...
Մեր բակի առուն փոխել իր հունը,
Կորել է կանաչ խոտերի մեջ:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ